# ԵՍ ՈՒ ԱՐԱՆ

ՍԱՐՄԵՆ

Հրազդանի ծաղկոտ ձորում
Բացել են նոր լողարան.
Երբ արեգակն է մեզ վառում
Իր շողերով հուրհրան,
Իմ մեծ եղբայր Արան ու ես
Վազում ենք դեպ լողարան:
Անվախ ու քաջ նավաստու պես
Սուզվել գիտե մեր Արան:

Մեզ հետ մեկտեղ ամեն կողմից
Երեխաներ են գալիս,
Թվում է, թե սարից, քարից
Իրարու ձայն են տալիս:
Ու ամեն օր, ամեն ժամի
Լողարանը լիքն է, լի՜ք.
Կարծես փոքրիկ մի ծով լինի,
Բայց ո՛չ նավ կա, ո՛չ ալիք:

Ինչքան ուզում է՝ հուր թափի
Այրող արևը ամռան.
Հրազդանի կանաչ ափին
Կա լայնարձակ լողարան,
Ուր ամեն օր մենք լողանում,
Պառկում ենք տաք ավազին,
Եվ սևանում ենք, ամրանում
Ես ու Արան միասին:




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 8

ՕԳՈՍՏՈՍ

1953 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Հետաքրքիր գիրք:**

*Ֆոտո-էտյուդ՝ Ա. ՁԱԼԱԼՅԱՆԻ*



# ՀԱՆԴԻՍԱՏԵՍԸ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

*Ճամբարի խորհուրդը վճռեց անտառի բացատներից մեկում «Կանաչ թատրոն» կազմակերպել: Լուրը բերնեբերան տարածվելով հասավ ճամբարի բոլոր պիոներներին և ոգևորեց նրանց: Ճամբարում միայն մեկը կար, որ անտարբեր էր «Կանաչ թատրոնի» նկատմամբ: Դա երրորդ ջոկատի պիոներ, վեցերորդ դասարանցի Հովիկն էր, մի գեր, կարմրաթուշ տղա:*

*Դեռ վաղ գարնանից Հովիկի ճամբար մեկնելու հարցը «ընտանեկան խորհրդի» հիմնական հարցն էր:*

*Հովիկի տատը, որ մեղրեցի գլուխը կապած մի աշխույժ պառավ էր, վերջին «նիստի» ժամանակ ասաց.*

*— Թողեք երեխեն ազատ շունչ քաշի...*

*Պառավի խոսքը բերանում մնաց.*

*— Ես իմ տղայի թշնամին չեմ,— տաքացած կտրեց Հովիկի մայրը.— ես միայն մի երեխա ունեմ, և այն էլ այնպես թուլակազմ...*

*Նա ձեռքով ցույց տվեց Հովիկին, որը մետաքսե խայտաճամուկ գիշերանոցի մեջ իր գեր մարմինը հազիվ տեղավորած, սեղանի վրա դրած ելակի երրորդ ափսեն էր դատարկում:*

*Հովիկի տեսքը բոլորովին էլ թուլակազմ երեխայի տեսք չէր, բայց տատն ավելորդ համարեց հին վեճը բորբոքել. ձեռքը թափ տվեց ու գնաց խոհանոց: Իսկ Հովիկի հայրը որոշեց լռել, ձևացնելով, թե գրասեղանի վրա թափված թղթերն է կանոնավորում: Նրա համար, հատկապես Հովիկին վերաբերող հարցերում, կինն ամենամեծ հեղինակությունն էր:*

*Բայց հակառակ մոր ցանկության, այնպես եղավ, որ Հովիկը ճամբար մեկնեց:*

*Երբ Հովիկն ավտոմեքենա էր բարձրանում, մայրն ասաց նրան.*

*— Զգո՛ւյշ կաց, առաջին անգամն է, որ ամբողջ ամառը մենակ ես լինելու. իսկ դու ինքդ էլ գիտես, որ թուլակազմ ես...*

*Եվ իսկապես, Հովիկը հենց այդպես էլ համոզված էր: Նա սարսափում էր միջանցիկ քամուց, վախենում էր կանաչ դեղնի խոնավությունից, անընդհատ փռշտում էր, տարվա բոլոր եղանակներին շրջում էր տաք բրդե հագուստով և միշտ գրիպով հիվանդ էր:*

***

*Երրորդ ջոկատն աստղաձև բուրգ էր կազմելու: Բուրգի հիմքում կանգնելու էին տաս ամրակազմ տղա, որոնք իրենց ուսերին կրելու էին մյուսների ծանրությունը: Ջոկատավարն ընտրեց տասին: Դրանց մեջ էր նաև Հովիկը:*

*— Դու առողջ ես երևում,— ասաց նա,— ինձ թվում է՝ կդիմանաս:*

*Հովիկն ուզում էր առարկել, բացատրել, որ ինքը թուլակազմ է, որ մայրիկը պատվիրել է զգույշ լինել. բայց ընկերներն այնպիսի տարօրինակ հայացքներով նայեցին նրան, որ նա շփոթվեց:*

*— Ես ուզում եմ հանդիսատես լինել,— կմկմաց նա,— մեկն ու մեկը հանդիսատես պետք է լինի՞, թե՞ չէ...*

*Բոլորը բարձրաձայն ծիծաղեցին: Այդ օրվանից ճամբարում սկսեցին Հովիկին «հանդիսատես» կոչել:*

*Նա ո՛չ գնդակ էր խաղում, ո՛չ բնագիտական արշավներին էր մասնակցում, ոչ էլ վրանից էր դուրս գալիս: Միայն կեսօրին, երբ բոլորն ուրախ կատակելով թափվում*

էին գետակի մեջ, Հովիկն էլ էր գետափ գնում։ Նստում էր մի քարի վրա և մերկ ոտքերը կախում ջրի մեջ. այդ բանը մայրիկը թույլատրել էր։

* * *

Ջոկատում անհանգստանում էին Հովիկի տարօրինակությունների համար։ Ոչ ոք չէր կարողանում հասկանալ, թե ինչի հետևանք են դրանք։ Ջոկատի խորհուրդը նույնիսկ քննեց այդ հարցը։ Ճամբարում Հովիկը մտերմացել էր Սիմոնի հետ. դրա համար էլ Սիմոնին հանձնարարվեց հետաքրքրվել Հովիկի առօրյայով։

Մի անգամ, երբ ջոկատը լողանում էր, իսկ Հովիկն ամեն օրվա նման ոտքերն էր ջրի մեջ կախել, Սիմոնը հարցրեց.

— Լսիր, հանդիսատե՛ս, ինչո՞ւ չես լողանում...

— Բա որ մրսե՞մ։

— Այս շոգին ինչո՞ւ պիտի մրսես։

— Ախր ես թուլակազմ եմ...

Սիմոնն այնպես բարձրաձայն քրքջաց, որ տղաները հավաքվեցին։

— Մի սրան նայեցեք, տղե՛րք,— ծիծաղից թուլանալով ասաց Սիմոնը,— ասում է «թուլակազմ եմ»...



...հետո վրա հասան, որ Հովիկի հագուստը զոռով հանեն...

Սիմոնի ծիծաղը վարակեց բոլորին, սկսեցին կատակել, հետո վրա հասան, որ Հովիկի հագուստը զոռով հանեն, բայց նա սարսափած դուրս պրծավ ընկերների ձեռքից և կոշիկները գետափին թողած փախավ։

* * *

Այդ օրվանից բոլորի համար պարզ դարձավ Հովիկի տարօրինակությունների պատճառը։

Ջոկխորհրդի նիստի ժամանակ ջոկատավարն ասաց.

— Նա, իհարկե, թուլակազմ չէ, ճամբարի բժիշկն էլ կարող է հաստատել. հարկավոր է այնպես անել, որ նրա գլխից դուրս գա այդ հիմար ենթադրությունը։

Այդ նիստից հետո ջոկատի պիոներներն սկսեցին ավելի մեծ ուշադրություն դարձնել Հովիկի վրա։

Առավոտյան, երբ գետում լվացվում էին, Սիմոնը Հովիկին ասաց.

— Արի մարմիններս սառը ջրով շփենք։

— Կմրսենք։

— Չենք մրսի։

— Չէ, ես վախենում եմ...

— Լսիր, ամոթ է,— հանդիմանեց Սիմոնը։

Կեսօրին տղաները համոզեցին Հովիկին։ Նա շորերը հանեց, մտավ գետը, մի երկու անգամ անօգնական ձևով թևերը թափ տվեց, հետո արագ դուրս եկավ ու շտապ հագավ շորերը։

Գիշերը Հովիկը չկարողացավ քնել։ Նրան թվում էր, թե կոկորդը ցավում է, իսկ մարմինն այրվում է տենդից։

Առավոտյան ճամբարի բժշկի մոտ վազեց։ Բժիշկը քննեց նրան, ջերմությունը չափեց ու ասաց.

— Ոչինչ չկա, ավելի շատ լողացիր, առավոտները մարմինդ սառը ջրով շփիր։

*Եվ Հովիկի համար նոր ու տարօրինակ կյանք սկսվեց: Ամեն օր վախվխելով նա շփվում էր սառը ջրով, կեսօրին լողանում էր տղաների հետ, իսկ անկողին մտնելով սարսափած մտածում, որ անպայման հիվանդանալու է:*

***

*Մոտենում էր «Կանաչ թատրոնի» բացման օրը: Ամեն օր բացատում պիոներները փորձեր էին անում: Ամբողջ ջոկատից միայն Հովիկը չէր մասնակցում այդ փորձերին: Նա նստում էր բացատի մի կոճղի վրա և դիտում, թե ինչպես են իր ընկերներն աստղաձև բուրգ կազմում: Ջոկատավարը հաշվում էր.*

*— Մեկ, երկու, երեք...*

*Առաջին հաշվին՝ բացատում կանգնում էին տաս ամրակազմ տղա, երկրորդին՝ նրանց ուսերի վրա էր բարձրանում երկրորդ շարքը, ապա՝ երրորդը, իսկ վերջում բոլորից բարձր կանգնում էր մի փոքրիկ տղա՝ ջոկատի դրոշակը ձեռքին: Երբ բուրգն արդեն պատրաստ էր լինում, ջոկատավարը ծափ էր տալիս և մի ակնթարթում բուրգը փլչում էր, ինչպես ստվարաթղթից պատրաստած աշտարակ:*

*Փորձից հետո, բուրգի մասնակիցները հավաքվում էին Հովիկի շուրջը և սկսում կատակել:*

*— Ինչպե՞ս էր:*

*— Դուր եկա՞վ:*

*— Դու ի՞նչ հանդիսատես ես. չես էլ ծափահարում:*

*Այդ օրերը Հովիկի համար տանջանքի օրեր էին: Բուրգին նայելիս նրան թվում էր, որ ինքն էլ կարող է տղաների հետ կանգնել բացատի կենտրոնում և պահել բուրգի երեք հարկերի ծանրությունը: Որոշում էր՝ խնդրել ջոկատավարին, որ իրեն էլ թույլ տա մասնակցելու: Բայց փորձից հետո, երբ ուզում էր այդ մասին խոսել, սիրտն այնպես էր թրթռում, ինչպես դպրոցում թվաբանության քննությունից առաջ: Մեկ-մեկ ընկերներից թաքուն գնում էր գետափ, փնտրում էր խոշոր քար ու փորձում բարձրացնել: Եվ հաճելի զարմանքով նկատում էր, որ բավական խոշոր քարերը կտրվում էին գետնից:*

***

*«Կանաչ թատրոնի» բացումը հրաշալի եղավ: Պիոներների համար բոլորովին անակընկալ հանդիսատեսներ էլ եկան. հարևան գյուղի բոլոր կոլտնտեսականները, որոնց հրավիրել էր ճամբարի պետը:*

*Բացատի շուրջը, կանաչ թևերն իրար պարզած, հսկաների նման կանգնել էին դալար ու սլացիկ եղևնիները: Նրանց տակ իրար էին փաթաթվել բաղեղները՝ խճճված թելերի պես:*

*Արևն արդեն ծագել էր: Նրա շողերը փայլփլում էին ծառերի կատարներին, միահյուսվում, դառնում լույսի խուրձեր և իջնում ծառերից:*

*Նախ մի փոքրիկ պիես խաղացին, ապա սկսեցին պարել ու երգել: Իսկ հետո բացատի կանաչ գորգի վրա երրորդ ջոկատի պիոներները կազմեցին իրենց հրաշալի բուրգը:*

*— Մե՛կ,— հնչեց ջոկատավարի ձայնը:*

*Տաս ջլապինդ տղա, ոտաբոբիկ ու կարճ անդրավարտիքներով, թռան արևի շողերով ողողված բացատի կենտրոնը:*

*— Երկո՛ւ:*

*Երկրորդ շարքը կանգնեց առաջինի ուսերին: Երրորդ հաշվին, երեք ճկուն մարմին մագլցեցին ընկերների մերկ ուսերի վրայով, իսկ չորրորդին՝ փոքրիկ դրոշակակիրն արդեն աշտարակի վրա էր:*

*Արևի շողերի տակ, շլացուցիչ կարմիր գույնով փայլփլում էր ջոկատի դրոշակը, իսկ կիսամերկ պիոներների արևառ մարմինները պլպլում էին բրոնզի նման:*

*Ուրախ ու աղմկոտ հանդիսատեսների մեջ կանգնած էր շառագունած Հովիկը. նա և՛ ուրախ էր, և՛ շփոթված. ուրախ էր ընկերների համար, իր ջոկատի համար, որի ելույթն ամենալավն էր: Շփոթված էր, որ ինքը չի մասնակցում բուրգին:*

***

*Ճամբարային օրերը թռան արագ: Եկավ վերադարձի ժամանակը:*

*Երրորդ ջոկատին ճամբարից քաղաք տանող բեռնատար ավտոմեքենայի մեջ մեքենայի լայնքով դրված առաջին տախտակի*



— Ոտքով գնանք,— կարմրելով ասաց Հովիկը:

վրա, Սիմոնի կողքին, նստած էր Հովիկը: Առաջին անգամ իր կյանքում նա պիոներական վզկապի տակից արձակել էր սպիտակ վերնաշապկի կոճակները, հանել էր գլխարկն ու մազերը տվել մեքենայի արագ ընթացքից առաջացած քամուն: Բոլորը նկատեցին այդ:

— Հանդիսատե՛ս, կմրսես,— կատակեց ինչ-որ մեկը:

Հովիկը շառագունեց, բայց ոչինչ չասաց:

Մեքենան դպրոցի բակը մտավ: Այնտեղ հավաքված ծնողները ժպտալով դիմավորեցին պիոներներին:

Հովիկը ճամպրուկը ձեռքին թռավ մեքենայից: Մայրն իսկույն գրկեց նրան, ապա ասաց.

— Դե, բալի՛կս, դու այստեղ սպասիր, հիմա տաքսի կվարձեմ:

— Ոտքով գնանք,— կարմրելով ասաց Հովիկը:

Մայրը զարմացավ.

— Իսկ ճամպրուկն ո՞վ կտանի...

— Մայրի՛կ,— ցածր ձայնով պատասխանեց Հովիկը,— ինքս կարող եմ տանել:

Եվ ապա շշունջով ավելացրեց.

— Ես ոչ թուլակազմ եմ և ոչ էլ ուզում եմ հանդիսատես լինել...

# ՎԱՐՊԵՏ ԳՈՒՐԳԵՆԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

—Բարի օր քեզ, վարպե՛տ Գուրգեն:
—Բարի գալուստ, փոքրի՛կ Վիգեն:
—Գիտե՞ս ինչու քեզ մոտ եկա:
—Ոչ, չգիտեմ. ասա՝ ի՞նչ կա:
—Վարպե՛տ Գուրգեն, փոս փորելիս
Ես կոտրեցի կոթը բահիս.
Թե քեզ համար շատ դժվար չի,
Մի կոթ սարքիր, գնամ գործի:
—Աչքիս վրա, փոքրի՛կ Վիգեն,
Քիչ սպասիր՝ հիմա սարքեմ:
Թա՛խկ-թո՛ւխկ,
Թա՛խկ-թո՛ւխկ...
—Օ՜ֆ, հոգնեցի.
Տե՞ս, սարքեցի:
Թե կոտրվի մեկ էլ հանկարծ,
Ինքդ սարքիր,— վարպետն ասաց:
—Շնորհակալ եմ, վարպե՛տ Գուրգեն:
—Գնաս բարով, փոքրի՛կ Վիգեն:



# ՋՐՈՒՅՑ ՄՏԵՐՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Սոսափում է անտառը մոտ,
Գետն է շառաչում.
Ծաղկոտ ափին խարույկն է բորբ
Ջրույցի կանչում:
Եվ ջոկատը պիոներական
Ելած արշավի,
Հանգիստ առավ երեկոյան
Հովին անտառի:

Բոլորն ուրախ մի ընդհանուր
Սեղան բաց արին,
Եվ կուշտ կերան, ինչ կարթով սուր
Որսացել էին.
Թեյ խմեցին անուշաբույր,
Ինչպես ընտանիք.
Իրենք տանտեր և իրենք հյուր,
Տանն այս անտանիք:



Այժմ մեկը նստած կոճղին,
Մյուսը թիկնած լուռ,
Մեկը հենված իր տոպրակին,
Մյուսը՝ կաղնուն ծուռ,
Լսում են ջերմ մի պատմություն,
Խոսքեր քնավոր,
Թե ինչ բան է մտերմությունն
Իսկական ու խոր:

Մեկը ասաց, թե չհուշեց
Քննության ժամին.
Ընկերն ինքը նյութը հիշեց
Եվ ստացավ հինգ:
Մյուսն էլ, թե՝— Մտանք Դեբետ
Ու Մարոն ընկավ.
Կարենն օգնեց և նա մեզ հետ
Գետափ դուրս եկավ...

Պատմում էին այսպես հերթով
Դեպքեր հուզական,
Ասես լցնում անուշ երգով
Սիրտը մանկական:
Երեկոն էր շշնջում զով
Ինչպես մտերիմ...
Հեռվում հունձն էր դաշտերում ծով,
Լանջերին բերրի:

Ջոկատավարը գրկեց պինդ
Երկու փոքրիկի,
Եվ աչքերում ճառագող խինդ,
Ասաց ուղղակի.
—Ճի՛շտ է, ճի՛շտ է, սիրելինե՛ր,
Ճիշտ եք ասում, հա՞...
Ա՛յ, իսկական ընկեր լինել
Հենց այդ է, որ կա:

Օգնել իրար, տանել առաջ
Ամեն գործի մեջ,
Մարտիկների պես աննահանջ,
Սիրով մի անշեջ:
Մի մեծ տուն ենք՝ քույր ու եղբայր,
Կյանքն է մեր խնդուն...
Դե՛, իսկ հիմա, շեփորահա՜ր,
Փչիր՝ հանգիստ քո՜ւն...

Փլվեց խարույկն ու հազար կայծ
Ցայտեցին հանկարծ.
Վզկապները կրակ դարձած
Լույս տվին նրանց:
Ջոկատավարն ահա ելավ,
Ջոկատն էլ փութկոտ,
Բայց մի փոքրիկ քնել էր լավ
Բարկ խարույկի մոտ:

Տեսան բոլորն ու հիացած
Ժպտացին նրան.
Ջոկատավարը կռացավ
Ծոյեց հոր նման:
Տղան թռավ կանգնեց, ժպտաց
Մեղավորի պես.
Ուզեց ասել, թե լսեց պարզ
Զրույցը նույնպես...

Բայց ի՞նչ փույթ, թե փոքրիկը այդ
Քնել էր արդեն.
Նա գիտեր, որ մի ողջ ջոկատ
Պաշտպան է իրեն.
Որ հարազատ ընտանիքի
Մեջ է ինքն անվիշտ,
Մտերմության հայրենիքի
Ջերմ գրկում է միշտ:



# ՃԱՀՃՈՒՏԻ ԾԵՐ ԳՅՈՒՂԱՑԻՆ

*ՎԻԼԼԻ ԲՐԵԴԵԼ* — *Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ*

Գերմանացի կոմունիստ գրող Վիլլի Բրեդելը ծնվել է 1901 թվականին, Համբուրգում, բանվորական ընտանիքում: Նա աշխատել է Համբուրգի գործարաններում, թղթակցել է շատ լրագրերի ու հետո Գերմանիայի բազմաթիվ քաղաքներում կոմունիստական լրագրերի խմբագիր եղել: Այդ ժամանակ նա հաճախ ենթարկվել է հետապնդումների և բանտարկության: Իր առաջին գրական գործերը նա հենց բանտերումն է գրել, որտեղ եղել է տարիներ շարունակ: Հիտլերյան հեղաշրջումից հետո նրան նետում են համակենտրոնացման ճամբար: Մի տարի հետո նա անցնում է Պրագա և ապա 1934 թվականին Սովետական Միություն: 1936 թվականին Բրեդելը մասնակցում է իսպանական ֆաշիստների դեմ տարվող կռիվներին: Հայրենական պատերազմի ժամանակ Բրեդելը ռազմաճակատից գերմանական զինվորներին դիմում է հակաֆաշիստական ոգեշունչ խոսքերով: Ավելի քան տաս տարի ապրելով Սովետական Միությունում, Բրեդելը բացի վեպերից գրել է նաև պատմվածքներ, որոնք նվիրված են մեր բանակի հերոսներին: Այդ պատմվածքներից է «Ճահճուտի ծեր գյուղացին»:

*Հիտլերյան ֆաշիստները հասան մի գյուղի, որտեղ միայն մի ծեր գյուղացի էր մնացել: Նա իր տան առաջ կանգնած, շարունակ խորը գլուխ էր տալիս նորեկներին:*

*Լեյտենանտը, մի երիտասարդ սպա, անհամբեր տոնով բղավեց.*

— Հե՛յ, հե՛յ, ի՞նչ է, չի՞ լսում։

Ծերունին դադարեց գլուխ տալ, և իր մահակին հենված, շեշտակի նայեց օտարականի դեմքին։

Մի այլ սպա, որը ռազմական թղթակից էր և տիրապետում էր ռուսաց լեզվին, ծերունուն հարցրեց.

— Պապի՛կ, որտե՞ղ են այս գյուղի մարդիկ։

Ծերունին ձեռքով ցույց տվեց մոտակա գետը և ասաց.

— Բոլորը փախան։

— Ինչո՞ւ։

Ծերունին ժպտալով ասաց.

— Նրանք վախենում էին ձեզնից։

— Ահա թե ի՜նչ... իսկ քո սրտում ահ չկա՞։

— Իմ սրտո՞ւմ՝ ոչ. ինչո՞ւ պիտի վախենամ ձեզնից, քանի որ ես ձեզ ճանաչում եմ։

— Իսկ որտեղի՞ց ես ճանաչում մեզ։



— Ես ձեզնից չեմ վախենում։

— Ես պատերազմական գերի եմ եղել ձեզ մոտ, պարո՛ն սպա. առաջին կռվին էր, Մեկլեմբուրգում. այո՛, ես ձեզ լավ գիտեմ։

— Ուրեմն դու մեզնից չե՞ս վախենում։

Ծերունին նորից կրկնեց քիչ առաջ ասածը.

— Ես ձեզնից չեմ վախենում։

Ռուսերեն չիմացող հրամանատարը դիմեց ռազմական թղթակցին, որ նա հարցնի ծերունուն, թե արդյոք մոտակայքում պարտիզաններ կա՞ն։

Ծերունին գլուխը բացասաբար շարժեց և ժպտալով ասաց.

— Ի՛հ, խեղճերը վախենում էին ձեզնից ու փախան։

Վաթսուն մարդուց բաղկացած ջոկատը մնաց գյուղում։ Զինվորները մտան տները, բոլոր անկյունները խուզարկեցին, տնտղեցին պահարանները, բայց բան-ման չգտան։ Նրանք սկսեցին անիծել բացակա տնատերերին։ Սպան, իր համհարզը և թղթակիցը մնացին ծերունու հետ։ Պատուհանի մոտ գտնվող միակ սեղանի վրա նրանք փռեցին մի քարտեզ և սկսեցին ուշադրությամբ ուսումնասիրել։ Նրանք հարցերով մեկ-մեկ դիմում էին ծերունուն, որը մի անկյունում սուսիկ-փուսիկ նստած էր։

— Հե՛յ, պապի՛, այստեղ մի նավակ կգտնվի՞։

— Այո, այո, մենք մի նավակ ունենք։

— Գիտե՞ս, մենք պիտի Նոգոզովո գնանք. դե հիմա ասա, ինչպե՞ս գնանք. երկաթգծի ուղղությա՞մբ, թե՞ ուրիշ ավելի հարմար ճանապարհ կա։

Ծերունին թե՝

— Իհարկե, երկաթգծի ուղղությամբ կարելի է գնալ. բայց կա ավելի կարճ ճանապարհ, ճահճուտի վրայով։

Սպան մատնանշեց քարտեզն ու ասաց.

— Եթե այստեղ պարտիզաններ կան, ապա նրանք անպայման երկաթգծի մոտակայքում կլինեն. այն էլ է ճիշտ, որ գետի վրայով անտառ տանող ուղին անհամեմատ ավելի կարճ է։

— Դու լա՞վ գիտես գետի մյուս կողմը գտնվող անտառից դեպի Նոգոզովո տանող ճանապարհը,— հարցրեց թղթակիցը։

— Պարզ է, որ Նոգոզովո տանող ուղին ես շատ լավ գիտեմ. չէ՞ որ քառասուն տարի է, ինչ ես ճահճուտում եմ ապրում, ինչպե՞ս չիմանամ։ Գետի վրայով պիտի անցնես մյուս ափը, գնաս անտառով և ահա՝ Նոգոզովոյում ես։

Սպան նկատեց.

— Ամենաապահովն այն կլինի, որ մենք այս ծերուկին վերցնենք մեզ հետ։

Նրանք փաթաթվեցին իրենց տաք զինվորական թիկնոցներով և պառկեցին քնելու, բայց դեռ շարունակում էին զրուցել ծերունու հետ։ Վերջինս ստիպված էր պատմել, թե ինչպես ինքը գերի ընկավ. իսկ երբ հասավ այնտեղ, թե ինչպես մինչև կոկորդը Մազուրյան ճահիճներն էր խրվել, սպաները ծիծաղից թուլացան։

Վերջապես նրանք քնեցին. մինչդեռ պառկած ծերունին մնաց արթուն։ Նա հասկացավ, որ ջոկատը Պինսկ քաղաքից է գալիս։

«Ուրեմն, եթե Պինսկից են գալիս, այնտեղի գյուղերը քարուքանդ են արել, կողոպտել են ու քաղսովետի նախագահին տանջելուց հետո գնդակահարել։ Ա՜խ այս գազանները, այս շնե՜րը։ Մեր փոխադրական միջոցները մերոնք չքացրել են. ուրեմն հույներդ կտրեցեք, շնե՛ր, իժի ձագե՛ր... Երկաթգիծն էլ քայքայված է արդեն... Ա՜խ, երանի՜ նրա ուղղությամբ գնան. արդյոք Վոլոդյան և Պետրովը սրանց աչքից բաց չե՞ն թողնի։ Տես, ինչպես էին ծիծաղից թուլացել, երբ լսեցին, որ ես մինչև կոկորդս խրված եմ եղել Մազուրյան ճահիճներում... Ինչպե՛ս էին ծիծաղում շանորդիքը, ինչպես էին ծիծաղում»։



Գիշերը բավական անց էր, որ ծերունին քնով անցավ. բայց երբ, սպաների պատվերով, համհարզը նրանց վերկացրեց, նա արդեն արթուն էր, թեև պառկած։

Թղթակիցն ասաց.

— Դե՛, ծերո՛ւկ, վեր կաց, դու մեզ կառաջնորդես։

— Ո՞ւր,— հարցրեց ծերունին և անմեղ ու անգիտակից ձևացավ. կարծես հենց ինքը չէր նրանց այդ մտքին բերողը։ Նա զարմացած հարցրեց.

— Դե՜, չէ՞ որ երկաթգիծն ուղղակի տանում է այնտեղ։

— Բայց դու ասացիր, որ ճահճուտի վրայով կրկնակի կարճ է ճանապարհը դեպի Նոգոզովո։

— Ճիշտ է, ճիշտ, ճահճուտի վրայով,— կրկնեց ծերունին։

— Դե, դու կառաջնորդես մեզ. չէ՞ որ քառասուն տարի է այս գյուղումն ես ապրում։

— Իհարկե, ճանապարհը գիտեմ, պարո՛ն սպա. բայց ոտքերս, ոտքերս արդեն ինձ չեն լսում։

— Ի՞նչ է ասում այս մարդը,— հարցրեց լեյտենանտը,— մի թարգմանեցեք։

— Նա չի ուզում մեզ դեպի Նոգոզովո առաջնորդել. պնդում է, որ շատ է ծեր, որ ոտքերն արդեն չեն ենթարկվում իրեն։

— Գիտե՞ք, դա շատ լավ նշան է. հիմա ես հրամայում եմ, որ նա ինքը մեզ առաջնորդի դեպի Նոգոզովո։

Ծերունին արդեն ոտքի վրա էր. նա ախ ու վախ էր անում փայտին հենված։ Կաղալով մոտեցավ լեյտենանտին. նա ուզում էր իր անպետք ոտքերը ցույց տալ սպաներին։ Սրանք ուշադրություն չդարձրին ծերունու խոսքերին և առաջ գցեցին նրան, իսկ իրենք հետևից գնացին։ Քիչ հետո թղթակիցը ընդհուպ ծերունու հետևից էր գնում. իսկ սպան և զինվորները ետ մնացին։ Ծերունին քայլում էր կաղալով և մտածում էր. «Արդյոք Վոլոդյան բավական ժամանակ կունենա՞ ամեն ինչ լավ դիտելու և անհրաժեշտ միջոցառումների դիմելու»։

Այդ մտքից ծերունին ներքին հրճվանք էր զգում։

Ջոկատը քայլում էր ճահճուտի վրայով։ Ծերունին փայտին հենված, կաղալով առաջնորդում էր նրանց։ Դեռ լույսը չէր բացվել, բայց անթիվ մժեղներ արդեն վժժում էին զինվորների շուրջը։ Տանջված թղթակիցը հարցրեց.

— Երեք ժամից ավելի չի՞ տևի այս։

— Ո՜չ, երբեք ավելի չի տևի,— փնթփնթաց ծերունին, իբր ավելի ու ավելի դժվարությամբ, կաղալով առաջ շարժվելով. մինչդեռ զինվորները երկար շղթայով, մեկը մյուսի հետևից, նեղ արահետով էին քայլում։ Հենց որ ծերունին կանգ էր առնում մի քիչ շունչ քաշելու, նրան հետևողները նույնն էին անում։ Ծերունին հիմա ավելի ու ավելի հաճախ էր կանգ առնում։ Նրան նայելիս կասեիր.

— Խե՜ղճ մարդ, որքա՜ն է տանջվում, հազիվ-հազ է քայլում. շուտով շնչասպառ կլինի։

Արևն արդեն շատ էր բարձրացել։ Մոծակ-

ները վխտում էին ջոկատի շուրջը։ Հանկարծ ծերունին կանգ առավ։

— Հը՞, ի՞նչ պատահեց։

— Ոչինչ, ոչինչ,— ասաց աշխուժացած ծերունին.— Թողեք մի հիշեմ ճիշտ ուղին։

— Ի՞նչը հիշես, տխմա՛ր, մի փորձիր չըհիշե՞լ։

— Հանգստացիր, պարո՛ն, թող խելքս գլուխս հավաքեմ, չէ՞։

Բոլորը շնչասպառ, շեշտակի նայում էին առաջնորդին, որը փայտին հենված ճահճի վրայով հեռուն էր նայում։

— Ըհը՜, հիշեցի՜... լավ հիշեցի. այնտեղ պիտի որ անտառ լինի. իսկ հետո իսկույն Նոգոզովոն,— նա ձեռքով ցույց տվեց հեռուն և արագ-արագ կաղալով առաջ անցավ։

— Սպասիր, ես քեզ ցույց կտամ, եթե ստում ես, հիմա՛ր։



...— Կրակի՛ր, քա՛ջ Վոլոդյա, կրակի՛ր...

Թղթակիցը ատրճանակը հանեց պատյանից և լուռ, բայց արագ քայլերով հետևում էր ծերունուն, իսկ լեյտենանտն ու զինվորները բավական ետ մնալով, հազիվ էին քարշ գալիս։ Ծերունին մահակով տնտղում էր ճահճոտ ուղին, գլուխը թափահարում էր և առաջ գնում։

— Դե բավակա՜ն է, խելա՛ռ ծերուկ...

— Ահա, ահա հասվեհաս ենք, ճիշտ ճանապարհի վրա ենք հիմա։ Հավանական է, որ այդ այդպես է, համբերությամբ քայլեցեք իմ հետևից։

Հանկարծ մի կրակոց լսվեց, մի հատիկ կրակոց. բայց այնպես թվաց, թե ճահճի վրա իշխող լռությունը պայթեց, կիսվեց և թղթակիցը մի թույլ ճիչ արձակելով փռվեց գետնին։

Մեր ծերունին ջահել պատանու պես արագությամբ ցատկեց ճահճի վրայով և մի ցածրիկ թփի հետևում թաքնվեց։ Սպան հեռվից տեսավ բոլորը և վերջապես գլխի ընկավ, թե ինչ ծերունու հետ են գործ ունեցել իրենք։ Կրակոցները կրկնվեցին։ Զինվորները արահետից մի քիչ դուրս եկան, որ գնդացիրը մարտական դրության բերեն, բայց խրվեցին ճահճուտի տղմի մեջ։ Հիմա էլ մյուս կողմից ճարճատյուններ լսվեցին։ Ամեն մի կրակոցից հետո մի զինվոր էր գետնին փռվում, թավալվում։ Մեր ծերունին, թփի հետևը նստած՝ ոգևորում էր երիտասարդ հրաձգին, որն անդադար կրակում էր հրացանից։

— Այդպե՜ս, այդպե՜ս, Վոլոդյա՛ ջան, կրակիր, սպանիր, սատկացրու այդ շներին. ցույց տուր, որ դու արժանի ես Վորոշիլովյան հրաձիգ կոչվելու. հիտլերյան շըները ուզում էին մեզ մահ բերել, բայց տեսա՞ր՝ ինչպես իրենք ծուղակի մեջ ընկան. կրակի՛ր. քա՛ջ Վոլոդյա, կրակի՛ր. տես՝ սպան այլևս անկարող է քայլել, ատրճանաբար խրվում է։ Հիմա ենք հասկանում մեր օրհնած ճահճուտի դերը։ Պետրովն ու Վանկան էլ վատ չեն կրակում, ջա՛ն, ջա՛ն, տղանե՛ր, Վորոշիլովյան հրաձիգներ, օրհնվի՜ մեր ճահիճը, օրհնվի՜, այդպես էր հարկավոր իժի զավակներին, ոչնչացրե՛ք։

Հիտլերյան մահաբերներից ոչ մեկը չազատվեց ճահճի ճիրաններից, մնացածն էլ պարտիզանի հրացանի գնդակներից ընկան։

Երեկո էր արդեն, երբ ծերունին մենակ տուն դարձավ։

Գերմ. թարգմանեց Ս. ՍԱՂՅԱՆ

## ՄԵՐ ՃԱՄԲԱՐԸ



Ա. ՄԻՆԱՍՅԱՆ

Նկ. ԳՐ. ԱՂԱՍՅԱՆԻ

Այս մեր շենքն է, իսկ սա՝ բակը։
Սա՝ բակային ճամբարը մեր,
Սա՝ ծաղկազարդ հրապարակը,
Ուր խաղում ենք ֆիզկուլտ խաղեր։
Իսկ այս փոքրիկ ավազանում,
Ամառային օրերին շոգ,
Ջուրն ենք լցվում ու լողանում,
Սուզվում ջրում, ուրախ, անհոգ...
Այս մոխրագույն վրանի տակ
Հավաքվում ենք կարդում գրքեր,
Խաղեր խաղում բազմատեսակ,
Պատմում իրար հուզիչ դեպքեր։
Ջեզնից ովքեր կցանկանան
Մեր ճամբարին ծանոթանալ,
Կխնդրեինք լինել մեզ հյուր՝
Տերյան փողոց, համար հարյուր։

## ԱՓՍՈՍ ԲԱԴԵՐԸ

(Անցյալի հուշերից)

Լ. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

1

*Մենք երեք այծ ունեինք։ Մեր ընտանիքի ամբողջ հույսը այդ այծերն էին. նրանք մեզ հյութալի կաթ էին տալիս, ուլեր ունենում և մեզ ուրախացնում։ Դրա համար էլ մայրս, քույրս և ես շատ հոգատար էինք նրանց նկատմամբ. սիրով խնամում էինք և փայփայում։*

*Այծերից մեկին մենք Ջիփլաղ մականունն էինք տվել։ Նա բոլորովին մերկ էր, առանց մազի, բայց փառահեղ մորուքով։ Նա ամենակաթնատուն էր։ Մայրս նրա համար թիկնոց էր կարել, որ ցուրտ ժամանակ հագնի՝ չմրսի։ Երկրորդ այծին մենք Աղնիվ էինք կանչում, որովհետև իր սակավ կաթից և՛ մեզ էր բաժին հանում, և՛ իր ուլին։*

*Ամենագեղեցիկը դրանց մեջ երրորդ այծն էր։ Գեղեցիկ էր, բայց ո՛չ ուլ էր ունենում, ո՛չ կաթ տալիս։ Մենք բոլորս ամեն տարի հույս էինք դնում, որ նա հետևյալ տարին ուլ էլ կունենա, կաթ էլ։*

*Մի օր էլ այսպիսի մի դեպք պատահեց։ Ընկերներս գյուղից դուրս էին բերել իրենց անասունները, որ Ծաղկունյաց լեռների ստորոտում արածացնելուց հետո քշեն յայլաղ։ Ես էլ դուրս էի բերել մեր այծերին, բայց միայն արածացնելու համար։ Այծերով սարը գնալը ամոթալի կլիներ։*

Գեղեցիկ են Քասախ գետի ափերը. աջ կողմը Արագածի ծաղկառատ փեշերն են, իսկ ձախ կողմը՝ Ծաղկունյաց լեռների ստորոտները։ Այնքա՜ն հրապուրիչ են այդ վայրերը, որ կռունկներն անգամ երամներով իջևանում են այդտեղ, հանգիստ առնում և շարունակում իրենց ճանապարհը։

Եվ ահա, այդ օրը, հովիտներից մեկի մարգագետնի թավիշ կանաչում թաղված անասունները մուշ-մուշ արածում էին։ Արածում էին նաև իմ այծերն ու մեկ-մեկ էլ թռչկոտում, ոստոստում, խաղում։ Բայց մենք նրանցից պակաս չէինք։ Երգում էինք, պարում, թռչկոտում, կանաչ խոտի մեջ գլուխկոնծի տալիս։ Ամենից շատ սիրում էինք տապկնոցի խաղալ։ Մարդաբոյ խոտը, գետափնյա եղեգնուտները, թմբերն ու փոսերը, իսկական տապկնոցի խաղալու համար էին։ Խաղում էինք, աղմկում, վիճում։

Խաղի ամենատաք ժամանակ ես ինձ գցեցի եղեգնուտների մեջ և հենց այն է՝ ուզում էի կռանալ, որ անտեսանելի դառնամ, երբ ոտքիս տակից մի կարմրաթևիկ սիրուն բադ թռավ։ Սկզբում շատ վախեցա. բայց երբ կռացա ու ցած նայեցի, ուրախությունից քիչ էր մնում ճչայի։ Ոտքիս կողքին բադի բույնն էր։

Խաղ-բան մոռացանք։ Բոլորս հավաքվեցինք և կլանված նայում էինք մեծ խնամքով պատրաստած բնին։ Բնում տասնհինգ ձու կար։

— Եկեք քանդենք, ձվերը ջարդենք,— բացագանչեց Գեղամը։

— Չէ, չէ, ի՞նչ ես խոսում,— վրա պրծան այս ու այն կողմից։

— Մեղք են, ափսոս են,— ասացին մի քանիսը։

Եվ մենք որոշեցինք բույնը չքանդել, չավերել։ Երբ անասունները կուշտ արածեցին, ընկերներս նրանց առաջ արեցին ու կամաց-կամաց սկսեցին սար բարձրանալ։ Ես մնացի իմ երեք այծի հետ։

Ամբողջ ուշքս ու միտքս բադի բույնն էր։ Ինչպե՞ս վարվել։ Չէի ուզում ձեռք տալ բընին. բայց գիտեի, որ չարաճճի Գեղամը այսօր, թե վաղը անպայման կգա, բույնը կավերի ու ձվերն էլ քարին կտա, կջարդի։ Չէ՞ որ նրանք ունևոր էին և այդպիսի բաների կարիք չէին զգում։ Դրա համար էլ որոշեցի ձվերը տուն տանել։ Անմիջապես գործի անցա։ Ուռենու բարակ ճյուղերից մի փոքրիկ զամբյուղ հյուսեցի, ձվիկները թավշյա խոտով մեկիկ-մեկիկ փաթաթեցի և խնամքով տեղավորեցի զամբյուղի մեջ, ապա այծերս առաջ արած, ճամփա ընկա դեպի տուն։

Զգույշ ու դանդաղ քայլում էի ճանապարհով և մտածում, թե ինչքա՜ն կուրախանա մայրս, երբ այդ ձվիկներից բադիկներ դուրս գան։ Հետո այդ բադիկները



...Ոտքիս կողքին բադի բույնն էր։

ճուտեր կունենան, կշատանան։ Ի՜նչ լավ կլինի... Ախր մեր երեք անձից բաղկացած ընտանիքը շատ աշխատում էր ու վատ ապրում։ Մայրս ուրիշների լվացքն էր անում, քույրս ճախարակով թել մանում, իսկ ես ամբողջ օրը զբաղվում էի այծերով։ Իսկ ամռանը այծերին և ուլիկներին կավելանան նաև բադիկները...

Վերջապես բադի ձվերը տուն հասցրի, զգուշությամբ տեղավորեցի մի կողովի մեջ ու դրեցի մեր տան անկյունում։ Անհամբեր սպասում էի մորս վերադարձին։

Մայրս դեռ տուն չէր մտել, որ ես նրան ուրախ-ուրախ պատմեցի կատարվածի մասին։

— Մի ածան հավը կամ բադը քսան այծ արժի,— ասաց մայրս ու թխսկան հավերից մեկին դրեց բադի ձվերի վրա։

— Ե՞րբ դուրս կգան ճուտերը,— հետաքրքրվեցի ես։

— Երեք շաբաթ հետո...

Ես անգրագետ էի. փող չունեինք, որ դպրոց գնայի։ Դրա համար էլ զարմացած նայեցի մորս դեմքին, թե երեք շաբաթը քանի՞ օր կանի։

— Քսանմեկ օր հետո,— կարծես իմ լուռ հարցին պատասխանելու համար ավելացրեց մայրս։

— Վա՜յ, քսանմեկ օր պիտի սպասե՞մ,— դժգոհեցի ես։

Մայրս ծիծաղեց։

## 2

Առաջին շաբաթն անցկացրի անասելի դժվարությամբ. օրերն իրար հետևից հազիվ գլորվում էին։ Երկրորդ շաբաթվա օրերն ասես ավելի երկարեցին, իսկ երրորդ շաբաթն այնքան ձգվեց, որ թվում էր, թե չէր վերջանալու։

Մի օր էլ, վաղ առավոտյան, երբ լույսի շողերը երդիկից նոր էին մուտք գործել մեր հացատունը, մենք վեր թռանք ինչ-որ ուրախ ճիչերից։

— Ջա՛ն, ջա՛ն, հալա մի տեսեք, հալա մի տեսեք, հալա մի նայե՜ք... Ի՜նչ բադիկներ են, ի՜նչ բալիկներ են...— ցնծագին գոչում էր մայրս։

Մորս ձայնն առա թե չէ, մերկ ու բոբիկ, քնաթաթախ տեղիցս վեր թռա։ Բադիկներին դեռ չէի տեսել, բայց արդեն կրկնում էի մորս խոսքերը.

— Ջա՛ն, ջա՛ն, ի՜նչ բադիկներ են, ի՜նչ բալիկներ են...

Երբ հետո մոտ վազեցի ու իմ աչքերով տեսա դեղին, թավամազ ճուտիկներին, ուրախությունից շփոթվեցի ու թխսկանի գլուխը համբուրեցի...

Այսպես, մեր կարեկից թխսկանը մեր տունն ու վճիտ առուն զարդարեց իր սիրունիկ բադիկներով։ Բայց ինչպիսի՜ սարսափի օրեր ապրեց նա, ինչպե՜ս էր վախեցած կչկչում ու վազվզում առվի ափով, մեր տան կողքի աղբյուրի շուրջը, երբ նազուկ բադիկները մոր ճիչերին անտարբեր, սառնորակ ջրերում լողում էին, սուզվում, ուրախ-զվարթ կղկղացնում։

Մայրն այդ անսովոր տեսարանով ահաբեկված այնպիսի աղեկտուր ճիչեր էր արձակում, որ մենք խղճահարվում էինք, բադիկներին ջրից հանում ու քշում էինք նրա կողմը։

Այսպես անցան ամռան օրերը։ Մեր բադիկները մեծացան ու բադեր դարձան։

Վրա հասավ հոկտեմբերը։ Ցրտաշունչ աշունը մեզ կպցրեց թոնրին։

Մի օր ես ու քույրս թոնրի մոտ աշխատում էինք ու քաղցր զրույց անում։ Քույրս ճախարակ էր պտտում, իսկ ես բադերի ձմեռային բնի համար փոքրիկ դռնակ էի սարքում։

Հանկարծ լսեցինք մորս աղեկտուր ճիչը.

— Վա՜յ, թռա՜ն, վա՜յ, գնացի՜ն... ա՛խ, ափսո՜ս...

Մենք կայծակի արագությամբ դուրս թռանք հացատնից և լեղապատառ հարցրինք.

— Ի՞նչ է պատահել, մայրի՛կ, ի՞նչ...

Մայրս խեղդված ձայնով պատասխանեց.

— Ի՞նչ է պատահել... բադերը թռան... թռան գնացի՜ն...

Ասաց և հուսահատ ծեծեց ծնկները։ Նրա դեմքն այնպես էր գունատվել, որ կարծես թե արյուն չկար երակներում։

— Ե՞րբ,— արցունքներս զսպելով հարցրի ես։

— Հիմա, հենց հիմա, չե՞ս տեսնում, ի՞նչ է…

Ես ու քույրս նայեցինք Արայի լեռան կողմը, բայց ոչինչ չտեսանք։ Կմկմալով հարցրինք։

— Ո՞ւր են, է, ո՞ւր…

— Ա՛յ թմրածներ, դենը նայեցեք, դենը…

Նայեցինք ցույց տված կողմը և վշտացած հառաչեցինք։

— Վա՛յ, ափսո՛ս, ափսո՛ս մեր բադերը…

Ինչքա՜ն տխրեցինք մենք այդ օրը։ Այնքան էինք վշտացել, որ ասես մեր ընտանիքի ծանր վիճակը թեթևացնելու վերջին հույսերն էին նրանք, որ թևեր առան ու թռան հեռո՜ւ, հեռո՜ւ…



—Վա՜յ, բռա՜ն, վա՜յ գնացի՜ն…

---




## ԵՐԳԻ ԽՄԲԱԿՈՒՄ

Մի պատանի մոտեցավ ճամբարի պետ Ֆրունզիկ Մարգարյանին և ցույց տալով ձեռքի գիրքն ասաց.

— Ահա երգարանը։ Ես հենց նոր գնեցի։ Մեզ շատ պետք է, չէ՞։

Նրանց շուրջը հավաքվեցին մի խումբ պիոներներ։ Նրանք շատ ուրախացան, որ նոր երգարան կա արդեն։ Չէ՞ որ առաջ երգեր սովորելիս նրանք դժվարանում էին։

— Իսկ ռուսական երգեր սովորելու համար ի՞նչ պետք է անենք,— հարցրեց Ֆ. Սարգսյանը, իրենց ընկեր, երգի խմբակի ղեկավար ժորա Գրիգորյանին։

— Կդիմենք Պիոներների պալատի խմբակավարին, նա մեզ կօգնի,— պատասխանեց ժորան։

Մի քանի օր հետո, Երևանի Կիրովյան ռայոնի № 20 քաղաքային ճամբարի պիոներներն սկսեցին ռուսական երգեր սովորել։

Երգի խմբակում այժմ ընդգրկված են 15 պիոներ և դպրոցական։ Նրանք բոլորն էլ սիրով մասնակցում են պարապմունքներին։ Պիոներները մեծ հանույքով երգում են «Պիոներական քայլերգ», «Երգ Ստալինի մասին», «Մեր երկիրը», «Մոսկվա—Պեկին» և ուրիշ խմբական և անհատական երգեր։ Անհատական երգերով հանդես են գալիս՝ Գրետա Աստվածատրյանը, Թամարա Ասլանյանը և ուրիշներ։

Մի անգամ ժորան դիմեց էդգարին և ասաց, որ նա էլ մասնակցի երգի խմբակի պարապմունքներին։ Էդգարն ասաց.

— Ես երգել չեմ կարող։

— Ոչի՛նչ, եկ մասնակցիր. հետո լավ կլինի։

Էդգարը սկսեց մասնակցել։ Կարճ ժամանակից հետո նա շատ երգեր սովորեց և դարձավ ճամբարի լավագույն երգողներից մեկը։

Ճամբարում հաջող ելույթներ են ունենում նաև նվագողները՝ ժորա Ղարիբյանը և Վարուժան Մովսիսյանը։

Դ. ԳԱԼՋՅԱՆ

# ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ԱՂԲՅՈՒՐԸ

*Ջորս հարկանի շենքի ընդարձակ ու կանաչազարդ բակում տեղավորված է Երևանի Ստալինյան ռայոնի № 13 քաղաքային ճամբարը։*

*Բացումից մի օր հետո ճամբարի պետ Լաուրա Դայանը և պիոներ Սոֆիկ Գրիգորյանը ճամբարի խորհրդի սենյակում զրուցում էին։*



Ստալինյան ռայոնի № 1 քաղաքային ճամբարի գրադարանում: *Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

*— Մեր ճամբարում հարյուրից ավելի երեխա կա, իսկ գրադարան չունենք,— ասաց Լաուրան։*

*— Պետք է մտածել այդ մասին,— խոսեց Սոֆիկը։*

*— Էլ ի՞նչ մտածել... գրադարան կարող ենք ստեղծել։ Ամեն մի պիոներ գրքեր կբերի, մենք էլ ցուցակներ ու քարտեր կկազմենք։*

*— Հիանալի՜ է,— ուրախ համաձայնեց Սոֆիկը,— այդ գործը հանձնարարիր ինձ, ես անպայման կկազմակերպեմ։*

*Գրադարան ստեղծելու միտքը նա հայտնեց ընկերուհիներին։ Նրանք մեծ սիրով մասնակցեցին այդ կարևոր աշխատանքին։*

*Վոլոդյա Ղազարյանը տնից բերեց Ս. Միխալկովի «Վ. Ի. Լենինի թանգարանում» և Մ. Գորկու «Պատմվածքները», Ցրուզյա Թորոսյանը՝ Հովհաննես Ղուկասյանի «Փոքրիկ վրիժառուները», Սաշիկ Հայրապետյանը՝ Արաքսի «Զվարթ ձայներ» գրքերը։ Գեղեցիկ, նկարազարդ գրքեր բերեցին Բերթան, Ռիման, Ջինան...*

*Պիոներներից ոմանք նույնիսկ 3—4 գիրք նվիրեցին։ Մի քանի օր հետո ճամբարի գրադարանն արդեն գործում էր։*

*Գրադարանի դռանը մեծ տառերով գրված է. «Սիրեցեք գիրքը՝ գիտելիքների աղբյուրը»։ Դա Սոֆիկն է գրել։*

*Գրքերի համար առանձնացված է փոքրիկ պահարան, որտեղ խնամքով դասավորել են ամբողջ գրականությունը։ Գրադարանավարուհին ուշադիր հսկում է, որ երեխաները վերցրած գրքերը ժամանակին վերադարձնեն, մաքուր պահեն ու չպատռեն։*

*Սոֆիկը շատ է սիրում իր գործը։ Նշանակված ժամերին լինում է գրադարանում, երեխաներին հարցնում է կարդացած գրքերի մասին։*

*Մի անգամ, երբ Ալդան վերադարձնում էր գիրքը, Սոֆիկը խնդրեց պատմել նրա բովանդակությունը։ Ալդան կակազեց, չկարողացավ։ Սոֆիկը նրան հանձնարարեց երկրորդ անգամ կարդալ նույն գիրքը։ Եվ Ալդան կարդաց։*

*Սոֆիկը շատ հաճախ երեխաներին հավաքում է իր շուրջը և սկսում բարձրաձայն կարդալ հետաքրքիր պատմվածքներ։ Ապա կազմակերպում է զրույց, ստուգում է, թե ով ինչպես է յուրացնում կարդացած գիրքը։*

*Ամեն մի բարձրաձայն ընթերցանությունից հետո, երեխաների մեջ ավելի մեծ սեր է առաջանում դեպի գիրքը։ Նրանք զգում են, որ կարդալն, իսկապես, շատ է օգնում հարստացնելու գիտելիքները, ավելի լավ ճանաչելու և սիրելու մեր հիասքանչ հայրենիքը, ծանոթանալու գիտության ու տեխնիկայի նվաճումներին։*

*Սոֆիկն անձամբ իմանում է, թե ճամբարի ո՞ր պիոները, ո՞ր առարկայից վերաքննություն ունի և հանձնարարում է այնպիսի գրքեր, որոնք կօգնեն նրանց աշնանային վերաքննությունները հաջող հանձնելու։*

*Գ. ՌՈՒՄՐ-ՇԱՏ*



Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԳՈՐԿԱՅՈՒՄ 1922 Թ.

Պարտիան և Լենինը
Երկվորյակ եղբայրներ են.
Մայր պատմության համար
Որի՞ արժեքն է ավելի:
Մենք ասում ենք—Լենին
Եվ հասկանում ենք պարտիա,
Մենք ասում ենք պարտիա
Եվ հասկանում ենք—Լենին:

ՎԼ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ

ՍՈՎԵՏ

Լրացավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի գոյության 50 տարին:

Հիսուն տարի առաջ, 1903 թվականի հուլիսի 30-ին բացվեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի (ՌՍԴԲՊ) երկրորդ համագումարը, որ սկիզբ դրեց Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիային: Մեր հարազատ պարտիայի, մեր Հայրենիքի, ամբողջ աշխարհի ռևոլյուցիայի շարժման պատմության մեջ այդ նշանակալից իրադարձությունը սիրով են նշում մեր երկրի բոլոր ժողովուրդները:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ստեղծողը, նրա հիմնադիրը Մարքսի և Էնգելսի հավատարիմ աշակերտ, նրանց ուսմունքը զարգացնող Վ. Ի. Լենինն էր: Ռևոլյուցիայի հանճար մեծ Լենինը շատ տարիների ընթացքում անխնա պայքար ծավալեց բանվոր դասակարգի ազատագրական պայքարի բոլոր թշնամիների դեմ և պրոլետարիատի ուժերը համախմբեց ռևոլյուցիոն մարքսիզմի դրոշի ներքո: Պարտիայի երկրորդ համագումարում աշխատավորության ոխերիմ թշնամիների՝ օպորտունիստական տարրերի՝ ապագա մենշևիկների դեմ մղված պայքարում հաղթանակեցին ռևոլյուցիոն պայքարի այն մեծ գաղափարները, որոնք Լենինը հետևողականորեն պաշտպանում էր իր քաղաքական գործունեության առաջին օրերից:

ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը Լենինի ղեկավարությամբ ընդունեց ռևոլյուցիոն ծրագիր, որի մեջ, որպես հիմնական խնդիր, առաջ էր քաշվում պայքարը պրոլետարիատի դիկտատուրայի համար, աշխատավոր մասսաների ազատագրության համար: Համագումարում Լենինը և նրա կողմնակիցները ամրապնդեցին իրենց հաղթանակը օպորտունիստների դեմ: Այդ պահից Լենինի կողմնակիցներին սկսեցին անվանել բոլ-

# ՅԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ 50 ՏԱՐԻՆ

շևիկներ, իսկ Լենինի հակառակորդներին, օպորտունիստներին՝ մենշևիկներ:

Ղեկավարվելով համագումարում ընդունված ռևոլյուցիոն ծրագրով՝ Կոմունիստական պարտիան Լենինի գլխավորությամբ հերոսական պայքար ծավալեց ցարիզմի և բուրժուազիայի դեմ, պրոլետարիատի դիկտատուրայի նվաճման, Սովետական իշխանության հաստատման, կապիտալիզմի լծից աշխատավոր մասսաներին ազատագրելու համար: Այդ պայքարը մեր երկրի ժողովուրդներին հասցրեց 1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակին:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմի խորտակման և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով, անցնելով իշխանության գլուխ. Կոմունիստական պարտիան դարձավ համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման առաջին «հարվածային բրիգադան»: Մեր պարտիան օրինակ է ցույց տալիս մյուս բոլոր երկրների կոմունիստական պարտիաներին՝ հասարակության ռևոլյուցիոն վերափոխման համար մղած նրանց պայքարում:

Հանճարեղ Լենինի, Լենինի աշակերտ ու նրա գործի շարունակող մեծ Ստալինի և նրանց զինակիցների ղեկավարությամբ բազմաթիվ հերոսական մարտերում կոփված Սովետական Միության Կոմունիստական պարտիան դարձել է կոմունիզմ կառուցող սովետական հասարակության կազմակերպող և ոգեշնչող ուժը:

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները հասել են պատմական վիթխարի հաղթանակների: Մեր երկրում վերջնականապես լիկվիդացվել են շահագործող դասակարգերը, ընդմիշտ ոչնչացվել է մարդու կողմից մարդուն շահագործելը: Սոցիալիզմի հաղթանակը Սովետական Միությունում մեր ժողովրդին բերեց նյութական բարեկեցության արմատական բարելավում. մեր երկրում իրականացվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիան:

Այժմ Կոմունիստական պարտիան լուծում է կոմունիզմի կառուցման, մեր բազմազգ սոցիալիստական պետության հետագա ամրապնդման, աշխատավորների նյութական և կուլտուրական կենսամակարդակի անընդհատ բարձրացման կարևորագույն խնդիրները:

Կոմունիստական պարտիան ստեղծել է բոլոր պայմանները՝ մեր անծայրածիր երկրի պիոներների ու դպրոցականների ուսման, հանգստի, նրանցից կոմունիզմի գիտակից ու սոցիալիստական Հայրենիքին անհունորեն նվիրված քաղաքացիներ դաստիարակելու համար: Սովետական երկրի մատաղ սերնդի տրամադրության տակ կան հիանալի կահավորված դպրոցներ, գեղեցիկ մանկական հրապարակներ, պիոներական տներ ու պալատներ, ամառային ճամբարներ, հարուստ գրադարաններ:

Այս բոլորը ստեղծվել են Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, երեխաների՝ կոմունիզմի ապագա կառուցողների նկատմամբ մեր պարտիայի ունեցած ամենօրյա հոգատարության շնորհիվ:

Կոմունիստական պարտիան է ստեղծել լենինյան կոմերիտմիությունը՝ սովետական երիտասարդության առաջավոր ջոկատը, պարտիայի ղեկավարությամբ է կազմակերպվել պիոներական կազմակերպությունը, որը կրում է մեր սիրելի առաջնորդ, հայր և ուսուցիչ Վ. Ի. Լենինի անունը:

Լենինիզմի դրոշով, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները գնում են դեպի կոմունիզմի նորանոր հաղթանակներ:

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

*(Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ)*



# ՍԱՐԵՐՈՎ ՈՒ ՁՈՐԵՐՈՎ

ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

*Վաղ առավոտ էր։ Անտառն արթնացել էր քնից։ Թռչունները ուրախ ճռվողյունով լցրել էին շրջապատը։ Արշավի մասնակիցները վաղուց ոտքի վրա էին։*

*— Ջոկատ շարվի՛ր,— ընդհանուր լռության մեջ լսվեց արշավախմբի պետի օգնական Սեդա Հալանջյանի ձայնը։*

*Արշավախմբի պետ ընկեր Տիտանյանը մոտեցավ շարքին։ Նա մեկ առ մեկ ստուգում էր հանդերձանքը. չլինի՞, թե որևէ բան մոռացված լինի։ Ամեն մեկին նա հարցնում էր.*

*— Ինչպե՞ս է առողջությունդ, անհրաժեշտ որևէ բան հո չե՞ս մոռացել։*

*Ստուգումը վերջացավ։*

*— Քայլով մա՛րշ,— նորից հնչեց հրամանը և շարքը, որի առջև փողփողում էր ալ դրոշը, կանաչ արահետով բռնեց դեպի Թեղենիս լեռը տանող ճանապարհը։*

*Շարքի առաջատարը Ծաղկաձորի երկրորդ մանկատան դրուժինայի խորհրդի անդամ Էմման էր։ Վերջից գնում էր վերջափակողը՝ գանգուր մազերով, խաժ աչքերով մի աղջիկ։ Դա դրուժինայի շախմատի չեմպիոն Եվգենիան էր։*

*Նրանք հագել էին թևերով մայկաներ, ֆինկաներ ու թեթև շստեր, իսկ գլխներին դրել ծղոտե լայնեզր գլխարկներ։ Ուղեպարկերում ծածկոցներն էին, ուտելեղենը և այլ անհրաժեշտ իրեր։*

*Պիոներներն առաջ էին շարժվում մի շարասյունով։ Նրանք ուսումնասիրում էին շրջապատը, որոնում անծանոթ ծաղիկներ ու դեղաբույսեր։*

*— Ի՞նչ անուշ են բուրում ծաղիկները,— ասաց Հասմիկը գունավառ ծաղկեփունջը մոտեցնելով Գրետային։*

*— Տեսնո՞ւմ ես, անտառը դեռ թաց է գիշերվա անձրևից, դրա համար էլ ծաղիկներն այդպես ուժեղ են բուրում,— ասաց Գրետան։*

*— Սպասեցե՛ք, հետախույզներն ինչ-որ բան են թողել,— ասաց մեկը ճանապարհից վերցնելով մի փոքրիկ ճյուղ։ «Այստեղ խմելու ջուր կա», այդ էր ասում ճանապարհային նշանը։ Եվ իրոք, երկու քայլ չարած, կանաչների մեջ երևաց թաքնված ջինջ աղբյուրը։ Խմեցին և շարունակեցին ճանապարհը։ Անցնում էին խիտ ծառերով ծածկված ձորակով, ապա թեք լանջով սկսեցին վեր բարձրանալ։*

*— Մի այս կողմը նայեցեք, տեսեք, թե ի՞նչ է կատարվել,— ձեռքը դեպի աջ մեկնելով ասաց Եվգենիան։*

*Շարքի վերջամասից տաս հոգի կանգ առան։ Նրանց առաջ հետաքրքիր տեսարան էր բացվել։ Տեղ-տեղ ահագին հաստաբուն ծառերը արմատահան եղած կամ կոտրված ընկել էին, իրենց տակ ճզմելով բազմաթիվ մանր ծառերն ու թփերը։*

*— Փոթորիկն է խորտակել... ի՞նչ ուժեղ է եղել...*

*— Քայլենք, աղջիկնե՛ր, մեզ են կանչում, — ասաց նրանցից մեկը։*

*Բոլորը նայեցին։ Մի բարձր տեղ կանգնած ազդարարողը ձեռքը թափահարում էր և կրկնում. «Շարունակել ճանապարհը»։ Ետ մնացողներն շտապեցին ընկերների հետքերով։*

*Եվգենիան դեռ փոթորկի կատարած ավերածության մասին էր մտածում. «Եթե փոթորիկն է այդպես արել, ապա ինչո՞ւ կանգուն են մնացել անտառից հեռու, միայնակ ու չպաշտպանված ծառերը»։*

*Նա հարցրեց ընկերուհիներին։*

*— Ես գիտեմ,—ինքնավստահ ասաց Հասմիկը։— Անտառի խիտ տեղերում աճած ծառերի ճյուղերը ստվերի պատճառով չեն զարգանում և չորանում են։ Այսպիսով ծառի ծանրության կենտրոնը խախտվում է։ Եվ ահա փոթորկի ժամանակ գագաթի ծանրության տակ չի դիմանում բունը և կոտրվում է. իսկ միայնակ ծառը աճում է հավասարապես և չի վախենում փոթորկից...*

*Նա նոր էր վերջացրել իր խոսքը, երբ պիոներներից մեկը բացագանչեց.*

*— Այստեղ նամակ կա,— և դեպի ձախ՝ հաշվեց չորս քայլ։ Նա քարի տակից հանեց*



Պատանի ճանապարհորդները ճաղրահարում են դժվարությունները։

մի փոքրիկ քառածալ թուղթ, բացեց և բարձրաձայն կարդաց.

«Բավական է, շատ եք տարվում շրջապատով։ Դեռ շատ ճանապարհ ունենք անցնելու։ Հարկավոր է նախաճաշել։ Մենք ձեզ սպասում ենք Սևքար աղբյուրի մոտ։

Փիրուզա, Լենա»

Նամակը չարաճճի հետախույզներն էին գրել։

Անտառը վերջանում էր։ Արշավախումբը նախաճաշելու համար կանգ առավ Սևքարի աղբյուրի մոտ։ Ովքեր պարտականություն ունեին, անմիջապես անցան գործի։ Սանիտարուհի Լուսիկը հետազոտեց շրջապատը և ցածում լվացվելու համար տեղ նշանակեց։ Խմելու ջուր պետք է վերցնեին ակունքի մոտից։

Արշավախմբի պետը երեք հոգու հերթապահ նշանակեց։ Նրանք պետք է օգնեին «խոհարար» Նունիկին։

Ապա թուղթ փռեցին, որ սփռոցին էր փոխարինում, և նրա վրա դարսեցին պահածոյի տուփերը, կանաչին, պանիրը, հացը։ Հայտնվեց տերմոսներով տաք սուրճը և, չգիտես որտեղից «խոհարարը» մեջտեղ հանեց շոկոլադը...

Արշավի մասնակիցները շատ լավ նախաճաշեցին։ Հետո միասին պարեցին «Պիոներական վալսը»։

Ջոկատի թղթակից Ջուլիետան դադարի պահին հանեց օրագիրը և գրեց.

«26 հուլիսի. ժամը վեցին դուրս եկանք ճամբարից։ Անցնում ենք կարճ դադարներով։ Ուսումնասիրում ենք մեր շրջապատը։ Բոլորիս տրամադրությունը բարձր է»։

Ջուր վերցնելուց հետո պատանի ճանապարհորդների շարքը ձգվեց դեպի լեռան գագաթը։

Սկսվում էր ճանապարհի դժվարին մասը։ Ջարդված հողը սահում էր ոտքերի տակ։ Արշավի մասնակիցները հենվում էին նիզակափայտերին։ Նրանք չստերը փաթաթեցին երկար խոտով. ոմանք էլ պարանի կտորներով։ Քայլելը հեշտացավ։ Մի քանիսը նեղվում էին շոգից ու ծարավից։ Ջրով լիքը տափաշշերը կախված էին նրանց կողքերից, բայց խմել չէր կարելի։ Կդժվարացնեին սրտի աշխատանքը։ Եվ նրանք արիաբար դիմանում էին։

Գագաթի մոտ վերելքն ավելի դժվարացավ։

— Սպասեցե՛ք, մենք ձեզ կօգնենք,— ասացին Լուսիկն ու Համիկը և ուղեպարկից հանելով պարանը, մի ծայրը ցած նետեցին, իսկ մյուսը պինդ կապեցին ժայռին։ Աղջիկներն ուրախացած բռնեցին պարանների ծայրերը և դանդաղ վեր բարձրացան։

Մի փոքր հետո լեռան գագաթին հպարտորեն ծածանվում էր արշավախմբի դրոշը։ Հյուսիսային կողմի ժայռի ստվերում նրանք տեսան մի ձյունաշերտ։

— Ձյո՜ւն, ձյո՜ւն,— հանկարծ բացագանչեցին աղջիկները։

Նրանք ձյունը խնամքով ետ տվեցին։

— Ծաղիկ է բուսել,— գյուտ արածի պես ասաց Ջուլիետան ու խոնավ հողից արմատով հանեց սպիտակ ծիլերը։ Բույսը ձեռքից-ձեռք էր անցնում...

Հարմար վայր ընտրելուց հետո քսան րո-

պե դադար տրվեց։ Ջուլիետան օրագրում շտապ գրանցում էր. «Ժամը 10-ն անց 25 րոպե։ Արշավախումբը գտնվում է Թեղենիս լեռան գագաթին։ Այստեղից առանց հեռադիտակի պարզ տեսնում ենք Գեղամա բարձրադիր լեռները, արևի տակ վետվետող Սևանա լիճը և շրջակայքում տարածված գյուղերն ու բնակավայրերը»։

Լեռան բարձունքից երևում էր Արզականի սարը, որտեղ կոլտնտեսության ֆերմաներն էին տեղավորված։ Նրանցից մի քիչ այն կողմ, հայելու պես փայլփլում էր լճակը։ Մարշրուտի համաձայն նրանք պետք է այդ տեղերով անցնեին։ Մինչև լճակը տաս կիլոմետր ճանապարհ կար։ Արշավախումբը որոշեց ճաշել այնտեղ։

Վայրէջքից հետո սկսվում էր կանաչ հովիտը։ Աղջիկներն աշխուժացան։

— Մի բան երգենք,— ասաց նրանցից մեկը և սկսեց.

«Պատրաստ, որ անցնես կյանքի
ճանապարհը...»։

Մի քանի կիլոմետր էր մնում մինչև լճակը, բայց նրանք հեշտությամբ կարող էին մոլորվել բլուրների մեջ և հարկադրված գիշերել բաց դաշտում։ Արշավախմբի պետն ու իր օգնականը ելք էին փնտրում։

— Ապա փորձենք, թե ինչպիսի հետախույզներ եք դուք,— ասաց Տիտանյանն ու առաջադրանք տվեց Փիրուզային ու Լենային՝ գտնել ճանապարհը։

Ճարպիկ հետախույզներն առաջադրանքն ստանալուց հետո անհետացան։

Արշավախումբն առաջ էր շարժվում։

— Մողե՜սը, մողե՜սը,— հանկարծ ձայն տվեց սև, կարճ խուզած մազերով, կրակոտ աչքերով մի անվախ աղջիկ ու ոտքով ամուր սեղմեց մողեսի պոչը։

Բոլորը շրջապատեցին Սիրուշին։

— Շիշ բերեք, ֆորմալինի լուծույթ պատրաստեցեք, շո՛ւտ արեք,— ասաց նա շնչակտուր ու ոտքն ավելի պինդ սեղմեց գետնին։

Մոտեցան ու փորձեցին մողեսին բռնել և շշի մեջ մտցնել. բայց բոլորը զարմացած նայեցին ցած և սկսեցին լիաթոք ծիծաղել։ Մողեսը պոչը թողել էր ու փախել։

— Դրանք այդպիսի հատկություն ունեն,— բացատրեց արշավախմբի պետը,— երբ տեսնում են, որ փրկվելու ելք չկա, պոչը թողնում են ու փախչում։

Պիոներները դեռ այդ մասին էին խոսում, երբ հայտնվեցին հետախույզները։ Նրանք լավ լուր էին բերել։ Ոչխարի հոտի թարմ հետքերով գտել էին ֆերմա տանող ճանապարհը։

Դադարը տրվեց լճակի ափին։ Կոլտնտեսականները սիրով ընդունեցին անսպասելի հյուրերին և հյուրասիրեցին։

Արշավի մասնակիցները կոլտնտեսական սարվորների համար ցուցադրեցին խաղաղությանը նվիրված գրական մոնտաժը։ Գեղեցիկը պարեց «Ուզունդարա» ու «Սևանի», խումբը կատարեց «Վենդերկան» և «Ուրախ սպարը»։

Կոլտնտեսականները նրանց պատմեցին ոչխարի էլեկտրական խուզի և այլ աշխատանքների մասին։ Նրանք արժեքավոր տեղեկություններ տվին իրենց կողմերում աճող դեղաբույսերի մասին։

— Սարը որ բարձրանաք,— ցույց էր տալիս նրանց ծերունի կոլտնտեսական Առաքել բիձան,— կհանդիպեք շատ օգտակար բույսերի։ Ինչե՜ր ասես, որ չկան մեր սարերում։ Է՛լ ջրապղպեղ, է՛լ անմեռուկ, է՛լ գետնալեղի, է՛լ արևաքուրիկ...

Նրանք շնորհակալություն հայտնեցին կոլտնտեսականներին և հրաժեշտ տվեցին։

Ջուլիետան հուշատետրում շտապ գրանցում էր.

«Ժամը 13-ն անց է 30 րոպե։ Մեզ անհայտ լճակը, որ անվանեցինք «Հանդիպման լճակ», մնաց հետևում։ Շարժվում ենք դեպի Թեղենիսի դիմացի բարձր լեռը։ Մինչև Ապարան մնում է 19 կիլոմետր։ Հոգով կայտառ ենք ու արի»։

Հերթական դադարը տրվեց ժամը տասնըչորսին՝ լեռան բարձունքին։ Այստեղից հիանալի տեսարան էր բացվում նրանց առաջ։ Դիմացը ձյունապսակ Արագածն էր՝ ստորոտում փռված գյուղերով։

— Ապարա՜նը, Ապարա՜նը,— բացագանչեցին մի քանիսը ձեռները պարզելով դեպի հեռվում երևացող գյուղը։

Պատանի ճանապարհորդներն ավելի աշ-

խուժացան։ Թվում էր, թե լեռան լանջով գլորվեն՝ կընկնեն Ապարան. այն ինչ դեռ բավական ճանապարհ կար։ Արշավախմբի մասնակիցները քարատեսակներ հավաքելով, տուփերի մեջ միջատներ ու թիթեռներ տեղավորելով, լեռան լանջով ցած էին իջնում։

Արագածից փչում էր հետզհետե ուժեղացող քամին։ Նրանք շտապում էին որքան կարելի է շուտ կատարել վայրէջքը։



Ճանապարհորդները անցնում են լեռնային գետը։

Դեպի հորիզոն թեքվող արևը ջրում սուզվողի պես անհետացավ բլուրների հետևը։

Աննկատելիորեն իջնում էր երեկոն։

՝Հանկարծ մոտիկ թփի տակից թափով դուրս պրծավականջները ցից մի նապաստակ ու սկսեց մետրանոց քայլերով փախչել։ Նրա հետևից թռավ արշավախմբի պետի նիզակափայտը. բայց նապաստակն ու փայտը կորան թփերի մեջ։

Արշավախումբը հաջողությամբ անցավ գետակը, և հարթ ճանապարհ դուրս եկավ։

Հեռվում բոցկլտում էին էլեկտրական լույսերը։ Դրանք Ապարանի լույսերն էին։ Արշավախումբը մի փոքր դադար առավ, կարգի բերեց զգեստները և զվարթ երգով մտավ գյուղ։ Նրանց ջերմորեն դիմավորեցին Սովետաշենի մանկատան ճամբար եկած սաները։

Առավոտյան նրանք մասնակցեցին ճամբարի դրոշի բարձրացմանը։ Դրոշը բարձրացնելու պատիվը վիճակվեց դրուժինայի խորհրդի նախագահ Կիմա Հունանյանին։

Նախաճաշից հետո գնացին Քուչակ գյուղը։ Այնտեղ նրանք հանդիպում ունեցան Դավիթաշենի մանկատան սաների հետ։ Հանդիպումը շատ ուրախ անցավ։ Երկու մանկատան սաների միացյալ ուժերով ճոխ ցերեկույթ տրվեց։ Մրցության դուրս եկան վոլեյբոլիստների թիմերը։ Խաղը 2:0 հաշվով շահեցին հյուրերը։

Առավոտյան արշավի մասնակիցները այցելեցին Մռավյան գյուղը։ Այնտեղ դիտեցին հնագույն հուշարձաններն ու գյուղի տեսարժան վայրերը։

Նախաճաշից հետո պատանի ճանապարհորդները հրաժեշտ տվեցին հյուրընկալներին և բռնեցին վերադարձի ճանապարհը։

Ջուլիետան օրագրում գրանցում էր վերջին տողերը։

«29-ը հուլիսի. առավոտյան ժամը 7-ը։ Առողջ ու կայտառ վերադարձանք տուն։ Մեզ հետ բերեցինք հարուստ հավաքածուներ ու հերբարիումներ հարազատ դպրոցի համար։ Ավելի մոտիկից ճանաչեցինք մեր հայրենի բնությունը։ Մենք կոփել ենք մեր կամքը և կարող ենք շատ դժվարություններ հաղթահարել»։

Այս արշավով Ծաղկաձորի երկրորդ մանկատան դրուժինան առաջին տեղը նվաճեց պատանի ճանապարհորդների ռեսպուբլիկական հավաքում։

Երեք մանկատների սաների հանդիպումը վառ է մնացել նրանց հիշողության մեջ։

Նորից ամառ է։ Պատանի ճանապարհորդները նորից մեծ արշավի են պատրաստվում։

# ՈՐՈՏԱՆԻ ԵԶԵՐՔԻՆ

Լ. ԽԱՉՅԱՆ

Նկ. Ան. Գասպարյանի

Այգեձոր գյուղը գտնվում է Սովետական Ադրբեջանի սահմանում: Գյուղի դիմաց, սահմանի այն կողմը, ադրբեջանական Ալիղուլի գյուղն է:

Երկու գյուղի կոլտնտեսականներն իրար հետ այնքա՜ն են մտերիմ, որ ամեն տարի ամառը իրար օգնության են գալիս և արագ ավարտում բերքահավաքի աշխատանքները: Մեր և նրանց կոմերիտականներն ու պիոներները երկու գյուղում էլ հայերեն ու ադրբեջաներեն ներկայացումներ էին բեմադրում:

Հայ և ադրբեջանցի կոլտնտեսականներն իրար հետ սիրով ու համերաշխ են, ինչպես մի ընտանիք: Այնպես որ, երբ Ալիղուլիի դիմացի մթին անտառի բրդոտ բնակիչները՝ արջերը սկսեցին վնասներ հասցնել կոլտնտեսության ցանքերին, նախագահ Նարիմանը դիմեց ինձ թե՝

— Եղբա՛յր Լազր, քո որսորդ ընկերներին վերցրու, եկ տեսնենք ի՞նչ ենք անում արջերի դեմ:

Աշնանային տաք օր էր: Մեր կոլտնտեսությունն ավարտել էր հացահատիկի բերքահավաքը, և բոլորը թեթևացել էին աշխատանքից: Գյուղի որսորդները՝ ես, Վանյան և Արամը հաջորդ օրը մտանք Ալիղուլի գյուղը:

Որոտանի ափին գտնվող այդ գյուղն այնպե՜ս է փոխվել, որ ով քսան տարի առաջ եղել է այնտեղ, հիմա չի ճանաչի: Խղճուկ գետնափորների փոխարեն այժմ կան լայն լուսամուտներով և գեղեցիկ պատշգամբներով քարաշեն տներ: Գյուղի ծայրի հարթավայրում, սաղարթախիտ ծառերի մեջ բարձրանում է դպրոցի նոր շենքը:

Լավ եմ հիշում. հին ժամանակ Սաֆար ամու տան դիմացի միակ թթենուց բացի, գյուղում ոչ մի ծառ չկար: Գյուղի վերևը ձգված մերկ ու կարմրագույն ժայռերն այնպես էին շիկանում, որ բնակիչները մինչև իրիկնադեմ չէին կարողանում դուրս գալ տնակներից, իսկ հավերն ու շները փախչում էին գետափ: Կոլտնտեսային կարգերի շնորհիվ Ալիղուլիի գյուղացիները դուրս եկան այդ վիճակից: Գյուղի հեռու ձորից, ժայռերի միջով առու փորեցին և ջուր բերելով՝ ոռոգելի դարձրին շրջապատի ամայի տարածությունները: Այժմ գյուղն այդ ջրի շնորհիվ այնպես է ծածկվել սաղարթախիտ թթենիներով, որ ամռան օրերին անգամ շոգը չի զգացվում:

Բարդիների կատարները խաղողի սև ողկույզների տակ այնպես են կորացել, որ հեռվից նայողին թվում է, թե ծառերի վրա ագռավների երամներ են թառած:

Գյուղի ներքևով հոսում է Որոտան գետը: Նրան նայող բլրի լանջերին խաղողի, թզի, նռան նոր այգիներն են տարածված, իսկ գետին կպած հարթավայրի մի մասում խընձորի միչուրինյան պարտեզն է, մյուս մասում՝ ծիրանի, տանձի, կեռասի այգիները: Գետի եզրին, մի փոքր տարածության վրա, փարթամորեն անում է եգիպտացորենի ցան-



...Ամեն մեկս մի ծառի վրա՝ անհամբեր սպասում էինք արջի երևալուն:

բը։ Այդ ցանքն էր, որ մենք՝ որսորդներս պետք է փրկեինք արջերից։ Իսկ արջերը ցանքից ոչ հեռու, մթին անտառում են, որտեղ այնպիսի խոռոչներ կան, ուր գազաններից բացի, ոչ մի արարած մուտք չի գործում։ Հենց որ մթնում է, արջերը անցնում են գետով և փչացնում կոլտնտեսության միրգն ու եգիպտացորենը։

Սրտաբաց ընդունեցին և հյուրասիրեցին մեզ Ալիղուլիի կոլտնտեսականները։ Մինչև մութն ընկնելը մենք ուսումնասիրեցինք գետի ափերը, ավազների վրա տեսանք արջերի հետքերն ու իմացանք, թե գետի ո՞ր մասովն են անցնում նրանք։ Մենք ձորձորների հետքեր ևս նկատեցինք և հետաքրքիր էր, թե նրանք ինչպե՞ս են անցնում ջրառատ Որոտան գետով, որն ահագին զոմեշներ է քշում։

Մենք բարձրացանք եգիպտացորենի մեջ եղած հսատաբուն թթենիները և դիրքավորվեցինք նրանց վրա։ Ես ընտրեցի գետին մոտիկ թթենին, որի տակով էր գալիս ու գնում արջն իր ձորձորներով։ Մեզ հետ եկած մի այլ որսորդ՝ Գյուլամը բարձրացավ երկար բարդենին։ Նա զգուշացնում էր մեզ, որովլու ժամանակ արջը բռնել է նրան և այնպես ջարդել, որ չանցած մի քանի օր մարդը մահացել էր։

***

Լուսնի կարենագույն ցոլքերը սփռվել էին Որոտանի արծաթափայլ փրփուրների վրա։ Ափն այնպես էր լուսավորված, որ գորտերն անգամ երևում էին։ Մենք պայմանավորվել էինք՝ թույլ տալ, որ արջը մտնի ցանքի մեջ, հետո խփել։ Ինձ արջին խփելն այնքան չէր հետաքրքրում, որքան այն, թե փոքրիկ ձորձորներն ինչպես են անցնում կատաղի գետով։

Որոտանի դղրդոցից բացի ոչ մի ձայն չէր լսվում։ Ամեն մեկս մի ծառի վրա՝ անհամբեր սպասում էինք արջի երևալուն։ Պայմանավորվել էինք չխոսել, չշարժվել և ոչ էլ ծխել։ Բայց ես չհամբերեցի և խախտեցի մեր պայմանը։ Երկրորդ ծխախոտն էի վառել ու պահում էի ափիս մեջ, երբ տանկի նման, թփերը ջարդելով, գետի մյուս եզրին մոտեցավ մի ահագին անասուն։ Արջն էր։ Նրա հետևից կրնկակոխ գալիս էին փոքրունի



*...Արջը փնչացնելով ճեղքեց-անցավ գետը...*

հետև հոր վաղաժամ մահվան պատճառն արջն էր եղել. կոլտնտեսության այգին ջրեչափ երկու ձորձոր։ Գետափի հասնելուն պես, մայր արջը փորի վրա պառկեց, ձորձորները

տեղավորվեցին նրա մեջքին: Արջը փնչացնելով ճեղքեց-անցավ գետը և հենց ափ դուրս եկավ, քոթոթները ցատկեցին նրա մեջքից: Արջն այնպես թափահարեց իրեն, որ ջրի կաթիլները հասան ինձ: Ապա մայրն ու քոթոթները ներս սողացին եգիպտացորենի ցողունների արանքը:

Քիչ հետո մեկը մյուսի հետևից որոտացին ընկերներիս հրացանները: Հրացանիս ձգանը բռնած՝ նշան էի բռնել գետափին և սպասում էի: Վերջապես արջն իր քոթոթներով դուրս եկավ ցանքից և պառկեց գետի եզրին: Քոթոթներն իսկույն բարձրացան նրա մեջքին և մայրն իր ձագերով բեռնավորված նորից ջուրը մտավ: Ես այնպես էի տարվել այդ տեսարանով, որ երբ ուշքի եկա, արջն արդեն հեռացել էր և ես անտեղի կրակեցի նրա վրա: Նա գոռաց և իր ձագերը մեջքին՝ մտավ մյուս ափի թփուտները:

Շատ էի ափսոսում, որ կոլտնտեսության եգիպտացորենը խժռողը կենդանի դուրս պրծավ մեր ձեռքից: Բայց հետագայում Նարիմանն ինձ գրեց, թե արջերն այլևս գետը չեն անցնում: Երևի այն գիշերվա մեր կրակոցները ունեցել էին իրենց ազդեցությունը: Զգուշանում էին. երևի կարծում էին, թե ամեն գիշեր թթենիներին թառած նրանց ենք սպասում:

---

# ԳԵՏԵՐԻ ԿՅԱՆՔԻՑ

*Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*

*(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)*

Մթնոլորտային տեղումներից առաջացող ջրերը հոսելով երկրի մակերեսի անհարթ մասերով, դառնում են առվակներ: Առվակները բարձունքներից իջնում են երկրի ցածրադիր մասերը և իրար խառնվում, դառնում գետակներ: Գետակներն էլ իրար միանալով կազմում են մեծ գետեր, որոնք անցնում են հազարավոր կիլոմետր ճանապարհ ու թափվում են ծով: Գետերի ճանապարհները շատ ոլորաններ են ունենում. դրանք կոչվում են մեանդրներ: Մեանդրներ շատ են ունենում հարթավայրերով հոսող գետերը: Այդպիսիները կոչվում են ծերացած գետեր: Հունը փորելու փոխարեն նրանք լցնում են սարերից բերված ավազով ու ապառների բեկորներով:

Գետի խորությունը միշտ փոփոխական է: Այնտեղ, ուր գետը թեքվում է այս կամ այն կողմ, միշտ ավելի մեծ խորություն է ունենում, քան նրա ուղիղ մասերը:

Գետերի խորը տեղերը ոլորանների մոտ կոչվում են պլեսներ: Որքան մեծ է ոլորտի թեքությունը, այնքան խորն է պլեսը: Ավելի ծանծաղ տեղերը կոչվում են դարավանդներ. դրանք առաջանում են այն դեպքում, երբ գետն այդ մասերում լցնում է իր հունը:

Երիտասարդ գետերի ճանապարհը համեմատաբար ուղիղ է. իսկ ծերացած գետերը հաճախ լցնելով իրենց հունը, փոխում են ուղղությունը: Այդպիսի գետերից է Ամու-Դարյան: Նա հաճախ է փոխում իր հունը: Հայտնի է Ամու-Դարյայի ցամաքած հին հունը, որն ունի երեքհարյուր կիլոմետր երկարություն: Մի ժամանակ այդ հունով

Ամու-Դարյան հոսել է դեպի Սարիկամիշ լիճը: Իսկ նրա մի ուրիշ հունը կոչվում է Ուզբոյ, որով այդ գետը թափվել է Կասպից ծովը: Լեռնային գետերի հուները, որոնք անցնում են ամուր լեռնատեսակների միջով, ավելի կայուն են և գրեթե չեն փոխվում:



Դրանք կարող են փոխել միայն հրաբուխները:

Գետի ջրի բարձրությունը սովորաբար կախված է նրա մեջ թափվող ջրերի և անձրևի քանակից: Բայց կան ջրերի բարձրացման վրա ազդող ուրիշ պատճառներ էլ: Օրինակ՝ գետի հոսանքին հակառակ փչող քամուց ջուրը բարձրանում է: Ծովերի և լճերի մոտ քամիներն հաճախ այնքան են արգելակում գետերի հոսանքը, որ հեղեղներ են առաջանում: Գետերի բարձրացումը և ցածրացումը պայմանավորված է նաև տեղատվության և մակընթացության երևույթներով: Երբ ծովափի մոտ է բարձրանում ջուրը, բարձրանում է նաև գետի մակերեսը: Դա տարածվում է գետաբերանից հարյուր կիլոմետր հեռավորության վրա: Մակընթացության հետևանքով Ամազոն գետի ջուրը բարձրանում է և տարածվում գետաբերանից 1400 կիլոմետր:

Գարնանը և աշնանը սառույցի արգելակումից էլ են բարձրանում գետերի ջրերը: Վարարման ժամանակ նրանց կենտրոնի և ափերի մոտի բարձրությունը հաճախ տարբեր է լինում: Կենտրոնում և ափերի մոտ ջուրը հոսում է կամ կուտակվում տարբեր արագությամբ. գետի հա՛րթ մակերեսը լայն ասֆալտապատ փողոցի է նմանվում կամ գոգավոր է դառնում: Այդ տարբերությունը Հյուսիսային Ամերիկայի գետերում հաճախ երկու մետրի է հասնում: Գետի հոսանքի արագությունը տարբեր մասերում նույնպես տարբեր է:

Ձմռանը գետերը սառչում են: Նրանք հաճախ ծածկվում են միքանի մետր հաստություն ունեցող սառույցի շերտով: Բայց սառչում է ոչ միայն գետերի մակերեսը, այլև հատակը: Գետի տակ առաջացող սառույցը կոչվում է հատակային սառույց կամ շուգա:

Դեռևս 1806 թվականի փետրվարի մի օր Պրուսիայի ափերի մոտ խարիսխների շըղթաները մի քանի մետր երկարությամբ բարձրացան և սկսեցին լողալ ջրի երեսին: Ջրի երես դուրս եկան անգամ քարեր: Մարդիկ կարծում էին, թե ծովի հատակից ստորերկրյա կրակ է արտավիժել: Հետագայում իմացան, որ շղթաներն ու քարերը պատած են եղել հատակում առաջացող սառույցի հաստ շերտերով: Վոլգայի հատակով անցնող հեռախոսային հաստ կաբելը նույնպես երբեմն բարձրացել է այդ պատճառով: Գիտնականներն ասում են, ո՛ր շատ ցուրտ ժամանակ, գետում առաջանում են սառցի բազմաթիվ մանր բյուրեղներ: Դրանք շրջապտույտ գործող ալիքների հետ հատակն են իջնում, կպչում հատակի առարկաներին ու մեծանալով վեր են բարձրացնում այդ շղթաներն ու քարերը:

Գետերը էներգիայի մեծ աղբյուրներ են, հաղորդակցության հրաշալի ճանապարհներ: Երբ հնարավոր լիներ լրիվ չափով օգտագործել գետերի էներգիան, կստեղծվեին հազարավոր հիդրոկայաններ, յուրաքանչյուրը մի քանի տասնյակ անգամ ավելի հզոր, քան Դնեպրոգէսը: Սակայն այսօր օգտագործվում է այդ էներգիայի չափազանց չընչին մասը միայն: Իսկ ո՞ւր է գնում գետերի մնացած էներգիան: Նա ավերում է երկրակեղևի զանգվածները և լեռներից հսկայական հող ու քար է տանում դեպի լճերն ու ծովերը:

Այս բոլորից բացի, գետերը ոռոգում են անծայրածիր տարածություններ, անապատները ծաղկած այգիների վերածում:

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՁԱՅՆԸ

*Սովետական ողջ ժողովուրդը, ողջ երիտասարդությունը, պատանիներն ու աղջիկները խորը ցասումով ու զայրույթով իրենց մեղադրական խոսքն են ասում ժողովրդի թշնամի, միջազգային իմպերիալիզմի վարձկան, ավանտյուրիստ Բերիայի մասին և անձնվիրաբար պաշտպանում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշումը։*

*Սովետական մարդիկ մեծ գոհունակությամբ հավանություն են տալիս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշմանը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության որոշմանը՝ սովետական ժողովրդի և Կոմունիստական պարտիայի ոխերիմ թշնամի, միջազգային իմպերիալիզմի գործակալ, ավանտյուրիստ Բերիային Կոմունիստական պարտիայի շարքերից վտարելու և նրան դատի տալու մասին։*

*Այդ ավանտյուրիստ կարիերիստը, խցկվելով սովետական պետական ղեկավար օրգաններում, ՍՍՌՄ Ներքին գործերի մինիստրի պաշտոնում, ձգտում էր իր ստոր մեքենայություններով խարխլել Սովետական կառավարությունը, նա փորձեր էր անում ՍՍՌՄ Ներքին գործերի մինիստրությունը վեր դասելու Կոմունիստական պարտիայից և Կառավարությունից։ Նա կադրերը ընտրում էր իրեն անձնապես նվիրվածության սկզբունքով, իսկ սկզբունքային պարտիականներին զանազան պատրվակներով հանում էր շարքից։*

*Նա ձգտում էր քայքայելու սովետական եղբայրական ժողովուրդների միասնական ընտանիքը, նրանց լենինյան-ստալինյան մեծ բարեկամությունը, որը հանդիսանում է մեր բազմազգ Սոցիալիստական պետության հիմքերի հիմքը։*

*ՍՄԿՊ-ի Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշումն արժանանում է ամբողջ պարտիայի, մեր ողջ ժողովրդի հավանությանը. ամենուրեք՝ պլենումներում, ակտիվներում ու ժողովներում մեր ողջ ժողովուրդը իր խոսքն ու ցասկոտ զայրույթն է հայտնում Բերիայի դավաճանական գործունեության առթիվ։*

*Վերջերս կայացած ՀԼԿԵՄ Կենտկոմի և Երևանի քաղկոմի միացյալ պլենումը, ռեսպուբլիկայի կոմերիտական ակտիվի մասնակցությամբ, արտահայտելով ռեսպուբլիկայի բոլոր կոմերիտականների և երիտասարդների միահամուռ կամքը, մեծագույն գոհունակությամբ, բուռն ծափահարություններով ընդունեցին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշումը՝ ստոր դավաճան, միջազգային իմպերիալիզմի գործակալ Բերիային պարտիայի շարքերից վտարելու և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության որոշումը նրան դատի տալու մասին։*

*Սովետական ժողովուրդը ղեկավարվելով իր ջերմորեն սիրելի Կոմունիստական պարտիայի կողմից, է՛լ ավելի սերտորեն է համախմբվում նրա լենինյան-ստալինյան Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը, բազմապատկում է իր ուժերը կատարելու այն ամենը, ինչ նրա առջև դնում է Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը։ Թող լավ իմանան ամեն տեսակի թշնամիները, ինչպիսի գույնով և դիմակով էլ որ հանդես գալու լինեն, կհայտնաբերվեն և երբեք չեն խուսափի արժանի պատժից։*

# ԵՐԵԽԱՅԻՆ ԵՐԿԱԾՆԵՐ

## ՍՈՒՐԻԿԻ ՕՐԱԳՐԻՑ

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 20.

Այսօր մեր պատմության դասատու Արամյանի առաջնորդությամբ կազմակերպվեց էքսկուրսիա դեպի Կարմիր բլուր: Ճանապարհին ես տղաներին պատմում էի այն հետաքրքիր դեպքերի մասին, որոնք տեղի են ունեցել այդ հին քաղաքում, բայց որոնց մասին դեռ ոչ մի տեղ չի գրվել:

— Բլրի վրա գտնվող այդ քաղաքում,— պատմում էի ես,— դարեր առաջ ապրում էր մի տարօրինակ ծերուկ Արին-տիշ-Կիրուս անունով: Նա իր ամբողջ կյանքի ընթացքում դուրս չէր եկել տնից, չէր կարդացել ոչ մի գիրք, բայց ծանոթ էր աշխարհում գոյություն ունեցող բոլոր գիտություններին: Նա գուշակել է դեպքերի ընթացքը: Մի անգամ թագավորը դիմել է նրան և հարցրել իր և իր թագավորության մասին:

— Թագավորն ապրած կենա,— պատասխանել է Արին-տիշ-Կիրուսը քո թագավորությանը ընդամենը մեկ տարվա և մեկ օրվա կյանք է մնացել: Դրանից հետո կլինի ոչ միայն քո, այլև այս քաղաքի վերջը: Իսկ այսօր լինելու է իմ վերջը:

Թագավորը, որ ծերուկի առաջին խոսքերը լսելուց հետո բարկացած պատրաստվում է գլխատել նրան, լսելով նրա վերջին խոսքերը հրաժարվում է Արին-տիշ-Կիրուսին գլխատելուց: Նա վախենում է, որ այդպիսով կարող է Կիրուսի մյուս գուշակությունն էլ կատարվել: Այսպիսով, իմաստուն ծերունին ասում է ճշմարտությունը, միաժամանակ փրկելով իր կյանքը: Իսկ քաղաքը, մեկ տարի անց, իրոք գրավվել և ավերվել է թշնամու կողմից:

Ընկեր Արամյանը, որ ծածուկ լսում էր ինձ, նկատողություն արեց, որ իմ պատմածը բոլորը հնարովի է, որովհետև ինքը ոչ մի տեղ չի կարդացել այդ մասին:

Զարմանալի է, որ նա չի կարդացել: Հավանաբար այդ մասին գրված եղել է իր ժամանակին, բայց ոչնչացել է դարերի ընթացքում, ինչպես շատ և շատ այլ փաստեր: Հետո՝ ինչո՞ւ ես չպետք է պատմեմ ընկերներիս իմ իմացածը, մանավանդ որ նրանք բոլորն էլ զարմացած էին:

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 28.

Զնայած էքսկուրսիայից մեկ շաբաթ հետո, այսօր բերքում նկարել եմ իմ ծաղրանկարը և տակը գրել «Արին-տիշ-Կիրուս», բայց դա ինձ համար ոչ մի նշանակություն չունի, քանի որ պատմության մեջ դեռ չի գտնվել մի արձանագրություն, որը հերքեր իմ պատմածը:

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 29.

Հրաշք: Այսօր տղաները դիպվածով պարզեցին, որ Կիրուս անունը հակառակ կողմից կարդալիս ստացվում է Սուրիկ: Դրանով հաստատվեց, որ այս ամենը ես եմ հնարել:

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

## ԱՆԲԱՆ ԹՈՐԳՈՄԸ

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

*—Թորգո՛մ, ցնցուղն ո՞ւր ես դրել,*
*Ծաղիկները պետք է ջրել:*
*—Է՜, քույրիկ ջան, մեծ բան չասիր.*
*Բայց մի քիչ էլ դեռ սպասիր.*
*Շտապելու կարիք չկա,*
*Գուցե մի լավ անձրև կգա...*
*—Որ այդպես է՝ արի նստիր,*
*Ես գիրք կարդամ, իսկ դու՝ լսիր:*
*— Ուսման տարին նոր է անցել,*
*Դեռ կարգին չեմ հանգստացել,*
*Արձակուրդին ի՞նչ գիրք, ի՞նչ բան,*
*Երբ ուրիշ լավ խաղեր շատ կան...*

*—Որ այդպես է, գնա ջուր բեր,*
*Սրբենք, մաքրենք սենյակը մեր:*
*—Դե՜, այս անգամ դու ինձ ներիր,*
*Տղան երբեք ջուր չի բերի,*
*Ջուր բերելը քեզ է սազում,*
*Իսկ դու կանգնել, ինձ ես ասում...*
*Երեկոյան մայրն եկավ տուն*
*Եվ կշտամբեց իր ծույլ որդուն.*
*—Դու ոչ տանն ես մի գործ անում,*
*Ոչ ուզում ես գրքեր կարդալ,*
*Շուտ քնում ես, ուշ արթնանում,*
*Քո վարմունքին ի՞նչ անուն տալ...*

# ԷՋԵՐ ՃԱՄԲԱՐԱՅԻՆ ԿՅԱՆՔԻՑ





Ես առանց ձեզ էլ կբարձրանամ





Այդ ճանապարհը լավը չէ...





Այս ինչ առու է, որ ես կամուրջով անցնեմ...



Էլ չեմ անի...

Նկ. Գ. Ադամյան




Ա. ՕՀԱՆՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Կիրգիզիայի մայրաքաղաք Ֆրունզեից մենք ճանապարհվեցինք դեպի հռչակավոր Իսիկ Կուլ լիճը։ Այստեղ կարելի էր հասնել նորակառույց երկաթուղիով, բայց մենք որոշեցինք գնալ ձիով, Չու գետի հովիտը լավ տեսնելու համար։ Չուն սրընթաց իջնելով Տյան-Շանի լեռներից՝ տափաստանում ողողում է իր լայնատարած հովիտը և անհետ կորչում Ղազախստանի ավազուտներում։

Սովետական իշխանության տարիներին Չուի հովտում կառուցվել են բազմաթիվ ջրանցքներ և հիմա այստեղ փռված են՝ շաքարի ճակնդեղի, բամբակենու, թելատու


Գերեզմանի վրա կառուցված է հոյակապ հուշարձան։

կանեփի ու կենաֆի, ցորենի անծայր դաշտեր և մրգաշատ այգիներ։

Հովիտը գնալով նեղանում է. մենք մըտ-

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

նում ենք Բուամի մռայլ կիրճը։ Չուի վշշոցը դառնում է ահեղագոչ ու խլացնող։ Ճանապարհը բարձրանում է կիրճի զառիթափ կողերով։

Չուի վերին հոսանքում, երկու բարձր ժայռերի միջև, սովետական ինժեներները կառուցում են Օրդո-Տոկոյի վիթխարի ջրամբարը և Չուի ջրանցքը։ Չուի անզուսպ ջրերը սանձահարվում են՝ ժողովրդին ծառայեցնելու նպատակով։ Ջրամբարում հավաքվող ջրերով ոռոգվելու են հարյուր հազար հեկտար նոր հողեր։

Գիշերելով կիրգիզական մի աուլում, լուսաբացին շարունակում ենք ճանապարհը։

Վերջապես մենք դուրս ենք գալիս Բուամի կիրճից։ Մեր առաջ բացվում է Իսիկ Կուլի պայծառ տեսարանը։ Ահա և լճի արևմտյան ափին գտնվող Ռիբաչյե ձկնորսական գյուղնավահանգիստը։ Մենք կանգ ենք առնում սովետական տուրիստների սիրած աշխարհիս ամենագեղեցիկ լեռնային լճերից մեկի ափին։

Մինչև այդ, ես շատ էի կարդացել Իսիկ Կուլի մասին։ Ընկերս հանում է «Տուրիստական տեղեկատու» և մենք նորից կարդում ենք. «Իսիկ Կուլ կիրգիզերեն նշանակում է՝ տաք լիճ։ Լճի մակերեսը 6000 քառակուսի կիլոմետր է, երկարությունը՝ 182 կիլոմետր, լայնությունը՝ 58 կիլոմետր, իսկ խորությունը՝ 702 մետր։ Լիճը ծովի մակերևույթից բարձր է 1624 մ.։ Չնայած դրան, ձմեռը նա չի սառչում։ Իսիկ Կուլի մեջ թափվում են 80 գետ ու գետակ, բայց դուրս չի հոսում և ոչ մի կաթիլ ջուր։

— Ուրեմն,— ասում է ընկերս,— Իսիկ

Կուլը Սևանից երկուս ու կես անգամ երկար է, մեկ ու կես անգամ լայն և յոթ անգամ խոր։ Բայց Սևանը Իսիկ Կուլից 300 մետր բարձր է։

Զրուցի ենք բռնվում լճի ափին գտնվող ձկնորսների հետ։ Նրանք մեզ պատմում են Իսիկ Կուլի կատաղի ալեկոծությունների մասին։ Դրանք առաջանում են արևելյան և արևմտյան քամիներից, որոնք՝ միաժամանակ փչելու դեպքում, նավերը քշում են դեպի լճի մեջտեղը։ Երբեմն պտտատահողմը լճի երեսին բարձրացնում է ջրի ահագին սյուներ։ Չնայած դրան, լճափի բնակիչները ջերմ սիրով են խոսում իրենց Իսիկ Կուլի, նրա տաք, չսառչող ջրերի, նրա գեղեցկության, նրա շուրջը գտնվող բազմաթիվ հանքային տաք աղբյուրների, ձյունապատ լեռների, նրա ափերի հարուստ կոլտնտեսային դաշտերի ու այգեստանների մասին։

Ձկներ էլ քիչ կան Իսիկ Կուլում։ Լիճը հարուստ է միայն խոշոր սազան ձկներով։

Իսիկ Կուլ լճի ափին է գտնվում Կոյսարա համամիութենական նշանակություն ունեցող կուրորտը։ Լճի ափերը մոտ ապագայում դառնալու են Սովետական Միության ամենալավ կուրորտային շրջաններից մեկը։

Առավոտյան «Կիրգիզիա» ջերմանավով ուղևորվեցինք դեպի Պրժևալսկ։ Նավից երևում են նոր գյուղեր, ջրանցքներ, գործարաններ։ Մենք կտրում ենք լիճը արևմուտքից արևելք՝ նրա ամբողջ երկարությամբ։ Իրիկնադեմին նավը կանգ է առնում մի բարձրադիր ափի մոտ և մենք իջնելով նավից, բարձրանում ենք դիմացի բլուրը։ Այստեղ թաղված է հռչակավոր ռուս ճանապարհորդ Պրժեվալսկին։ Մեռնելուց առաջ նա խնդրել է իրեն հողին հանձնել հենց այստեղ՝ Իսիկ Կուլի կապույտ ջրերի մոտ, Տյան Շանի ձյունածածկ լեռների ստորոտում։ Գերեզմանի վրա կառուցված է հոյակապ հուշարձան։ Դա մի գրանիտե ժայռ է, որի վրա թառել է թևատարած բրոնզե արծիվը՝ կտցում բռնած ձիթենու ճյուղը։ Արծվի ոտքերի տակ փռված է Ասիայի քարտեզը, որի վրա գծված են Պրժևալսկու ճանապարհորդությունների մարշրուտները։ Հուշարձանի վրա գրված է. «Նիկոլայ Միխայլովիչ Պրժեվալսկի՝ Կենտրոնական Ասիայի բնության առաջին հետազոտողը»։

Մենք ուղևորվում ենք Պրժևալսկ քաղաքը (նախկին Կարակոլ), որն այստեղից 12 կիլոմետր հեռավորության վրա է։

Պրժեվալսկը ծածկված է խնձորի և այլ պտղատու ծառերի կանաչ սաղարթների մեջ։ Այստեղ կառուցված են սննդի տասնյակ նոր գործարաններ։ Պրժևալսկը մեր մարշրուտի վերջին կետն էր։ Այստեղից մենք նույն ճանապարհով վերադարձանք Ֆրունզե։

# ԻՄ ՍԻՐԱԾ ԳԻՐՔԸ

## ՄԱՅԱՅԻ ՆՄԱՆ

Վերջերս ես կարդացի Ռաֆայել Աթայանի «Մայա» վիպակը։ Այդ գիրքը գրված է Կրասնոդոնի «Երիտասարդ Գվարդիա» ընդհատակյա կազմակերպության հայ անդամներից մեկի՝ Մայա Փեհլիվանովայի մասին։

Մայան ինձ շատ դուր եկավ։ Նա շատ լավ ընկեր է, ուշադիր ու հոգատար։ Նա անսահմանորեն սիրում էր մեր Հայրենիքը և սիրելի Հայրենիքի համար էլ տվեց իր կյանքը։ Մայայից և նրա ընկերներից մենք շատ բան ունենք սովորելու։ Մենք պետք է նրանց պես դպրոցում լինենք կարգապահ ու գերազանց սովորենք։ Դրանով կարտահայտենք մեր անհուն սերը սիրելի Հայրենիքի նկատմամբ։

ՌԱՅԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

(Լենինականի 10-րդ դպրոցի 6-րդ ա դասարանի աշակերտուհի)

## ՍԻՐԵԼԻ ՀԵՐՈՍՆԵՐ

Իմ ազատ ժամերին ես զբաղվում եմ ընթերցանությամբ:

Այս տարի ես շատ գրքեր եմ կարդացել, բայց ամենից շատ ինձ դուր են եկել «Զոյա» և «Պավլիկ Մորոզով» գրքերը: Ես այդ գրքերը կարդացել եմ մեծ հետաքրքրությամբ: Նրանցից ես իմացա, թե ինչպես մոսկվացի կոմերիտուհի Զոյան պայքարում էր ֆաշիստների դեմ մեր Հայրենիքի ազատության համար, ինչպես նա իր կյանքը զոհեց հանուն Հայրենիքի: Ես մանրամասն ծանոթացա նաև ուրալցի Պավլիկ Մորոզովի հերոսական կյանքի հետ: Ա՛յ, այդպես պետք է լինի իսկական պիոները:

*ՍՈՒՐԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ*
*(Երևան)*

## ԽԻԶԱԽ ԱՂՋԻԿԸ

*Ինչ խոսք, որ հեշտ չէ գերազանց սովորելը: Դրա համար հարկավոր է պարապել, համառ լինել, հաղթահարել դժվարությունները: Միայն այդպես կարելի է մեր Հայրենիքի արժանավոր զավակը դառնալ:*

*Ես կարդացի Ե. Իլյինայի «Չորրորդ բարձունքը» գիրքը, որը պատմում է Հայրենիքի դուստր Գուլյայի հերոսական կյանքի մասին:*

*Գուլյան իր համառությամբ կարողացավ մեկը մյուսի հետևից նորանոր բարձունքներ գրավել: Նա մեծ կամքի տեր էր, այդ էր պատճառը, որ միշտ կարողանում էր հասնել իր ցանկացածին, որքան էլ այն դժվարությամբ տրվելու լիներ:*

*Գուլյան զոհվեց ռազմաճակատում մեր Հայրենիքի համար մղվող մարտերում: Նա զոհվեց, բայց նրա կյանքը օրինակ է մեզ համար, մեր երկրի բոլոր մանուկների համար:*

*ԷՄՄԱ ՀՈՎՍԵՓՅԱՆ*
(Լենինական)

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

### Արագ նկարել

— Երեխաներ՛, այսօր խաղը ղեկավարելու է Արտաշեսը,— ասաց ավագ ջոկատավար ընկեր Գուրգենը:

Արտաշեսը, որ սկզբից պատրաստել էր խաղի պարագաները, բերեց երկու փոքրիկ սեղան, նրանց վրա դրեց սպիտակ թուղթ և մատիտ:

— Առաջին և երկրորդ ջոկատներից այստեղ ուղարկեցեք հինգական պիոներ,— ասաց Արտաշեսը:

Պիոներները եկան: Արտաշեսը նրանց շարքով կանգնեցրեց սեղաններից 10 քայլ հեռու և ասաց.

— Հրահանգը լսելուն պես, ամեն շարքի առաջին պիոները վազում է դեպի սեղանը, վերցնում մատիտը և նկարում սենյակի պատերը: Ապա վազքով գալիս է և մատիտը հանձնում հաջորդին: Նա վազում է դեպի սեղանը, նկարում է դուռը. շարքերի երրորդ պիոներները գծում նկարում են լուսամուտը, չորրորդները՝ կտուրը, իսկ հինգերորդները՝ ծխնելույզը: Պա՞րզ է:

Հաղթանակը կտանի այն շարքը, որն արագ և գեղեցիկ կնկարի:

Երեխաները սկսեցին խաղալ: Նրանց շատ դուր եկավ այս խաղը:

### Շրջանակներով

Ճամբարի պետի հրահանգով 80 երեխա բաժանվեցին երկու մասի և 4 քայլ հեռավորության վրա, շարքով կանգնեցին իրար դիմաց:

— Խաչի՛կ, Սուրի՛կ, այստեղ դրեք շրջանակները,— ասաց ճամբարի պետը:

Նախօրոք պատրաստած 50 սանտիմետր տրամագիծ ունեցող շրջանակները տղաները հանձնեցին պետին: Ամեն մի շրջանակը պահելով մի ձեռքում ճամբարի պետը կանգնեց շարքերի մի ծայրում և ասաց.

— Հենց որ հրահանգ տամ, ամեն շարքի առաջին պիոները իմ ձեռքից պետք է վերցնի շրջանակը և արագորեն անցկացնի մարմնով վերից վար, ապա հանձնի հաջորդին: Նա էլ շրջանակը պետք է անցկացնի ներքևից վերև և տա մյուսին: Եվ այսպես շարունակ: Որ շարքի պիոներները շուտ ավարտեցին շրջանակի անցկացումը, այդ շարքն էլ կտանի հաղթանակը:

Նա շրջանակները պանելով մեկը՝ մի շարքի, մյուսը՝ մյուս շարքի կողմը գոչեց.

— Երեք, չո՛ռս:

Խաղն սկսվեց: Պիոներները արագ և ճարպկորեն շրջանակներն անցկացնում էին մարմնով: Մի շարքը մրցում էր մյուսի հետ:

Մի տեղ հանդիսատեսները և խաղացողները մի լավ ծիծաղեցին: Արամն այնքան չաղլիկ էր, որ մինչև շրջանակը անցկացրեց, ճռռեց:

Անցավ երկու երեք րոպե: Աջ կողմի շարքի 40-րդ պիոները շրջանակը անցկացնելուց հետո, վազքով բռնեց հանձնեց համբարի պետին:

Հաղթող շարքը ցնծության մեջ էր. բոլորը ծափահարում էին նրան:

*Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ*

### Շարժիր ուղեղդ

*Գտիր մի եռանիշ թիվ, որի վերջին թվանշանը բերելով առաջ, թիվը մեծացնես 9-ով, իսկ միջնեղի թվանշանը բերելով առաջ, թիվը փոքրացնես 90-ով:*

---

*Հայրն իր աղջկանից մեծ է 360 անգամ: Իմացիր, թե քանի՞ տարեկան է հայրը և քանի՞ տարեկան՝ աղջիկը:*

---

*Այս ուղղանկյան մեջ ավտոմեքենայի ընթացքի ուղղությամբ կարդա ռուս խոշորագույն վիպասանի անունը, հայրանունը և ազգանունը:*

*Առաջարկություն՝ Լ. ԽԱՆՋԱԴՅԱՆԻ*




Շապիկը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





*Ի ս. խմբագրի՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՍԵՎՈՒՆՑ Գ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 03720: Պատվեր 506, տիրաժ 5000: Տպագրական $2^1/_4$ մամուլ: Ստորագրված է տպագրության 27.VII.1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.*




## Լեսյա Ուկրաինկա

(1871—1913)

Լարիսան նիհար ու գունատ մի աղջիկ էր և մեծ մասամբ գամված էր անկողնուն: Նա ծանր ոսկրային հիվանդություն ուներ, բայց չնայած դրան անընդհատ կարդում էր, լեզուներ ու երաժշտություն էր ուսումնասիրում:

Լարիսան դեռ տասներկու տարեկան էր, երբ ցարական ժանդարմները նրա մորաքրոջը, ռևոլյուցիոն գործունեության համար, աքսորեցին Սիբիր: Այս դեպքն ալեկոծեց փոքրիկ, զգայուն աղջկա սիրտը և նա



գրեց իր առաջին բանաստեղծությունը: Այնուհետև նա տպագրում էր իր գործերը Լեսյա Ուկրաինկա անունով:

Դեռ փոքր հասակից Լեսյա Ուկրաինկան տեսավ գյուղացիների ծանր կյանքը, նրանց ուժից վեր աշխատանքը: Իշխանությունը և հարստությունը գտնվում էր կալվածատերերի ձեռքում: Ճնշումն ու կամայականությունը սահման չուներ:

Լեսյան փոքր հասակից ատում էր հարուստներին: Նրա հոգում բորբոքվում էր ժողովրդի ազատության համար պայքարի կրակը: Լեսյա Ուկրաինկան սպասում էր այն օրվան, երբ ժողովուրդը կփշրեր իր դարավոր շղթաները: Ամենածանր և մռայլ տարիներին նա կոչ էր անում պայքարի:

Լեսյա Ուկրաինկան բազմաթիվ բանաստեղծություններ է գրել նաև երեխաների համար:

«Սպասեցեք, երեխանե՛ր,
Շուտով ցուրտը կանցնի...»

ասում էր նա իր հրաշալի «Գարնանային» բանաստեղծության մեջ:

Ուկրաինական մեծ բանաստեղծուհին մեռավ 1913 թվականին: Լեսյա Ուկրաինկայի մահվան առթիվ բոլշևիկյան «Ռաբոչայա պրավդա» թերթը գրեց. «Նրա ստեղծագործությունները երկար ժամանակ մեզ պայքարի կհանեն»:

## Անմոռանալի ռևոլյուցիոները

Վլադիմիր (Լադո) Կեցխովելին ծնվել է 1876 թվականի հունվարի 2-ին Գորիի գավառի Տղվիավի գյուղում:

Դեռ փոքր հասակից Լադոն շատ զգայուն և լուրջ բնավորություն ուներ: Երբ նա ձեռնամուխ էր լինում որևէ գործի, ապա մեծ համառությամբ այդ հասցնում էր մինչև վերջ:

1883 թվականին Լադոյին տվին Գորիի հոգևոր ուսումնարանը: Հենց այստեղ էլ նա ծանոթացավ և մտերմացավ Ի. Վ. Ստալինի հետ: Նրանց ջերմ բարեկամությունը շարունակվեց մինչև Լադոյի ողբերգական մահը:

1891 թվականին Կեցխովելին մտավ Թբիլիսիի հոգևոր սեմինարիան:



Այնտեղ նա սեմինարիայում տիրող ռեժիմի դեմ 4 օրյա դասադուլ կազմակերպեց: Դրա համար շատերի հետ նա հեռացվեց սեմինարիայից: Այդ ժամանակից էլ սկսած Կեցխովելին իր կյանքը կապեց մարքսիստական խմբակների հետ, ներգրավվեց ռևոլյուցիոն պայքարի մեջ:

Ցարական լրտեսները հետևում էին անհնկուն ռևոլյուցիոներին և ահա 1902 թվականին նրանց հաջողվում է ձերբակալել Լադոյին:

Մետեխի մռայլ բանտում էլ Կեցխովելին շարունակում էր պայքարը: Ժանդարմները վախենում էին անընկուն ռևոլյուցիոներից: 1903 թվականի օգոստոսի 30-ին դահիճները նրա վրա կրակեցին բանտի պատուհանից:

Այս տարի լրանում է Կեցխովելու մահվան 50 տարին:

## Սովետական ածխահատները

Մարդը չորեքթաթ է գնում: Նա նույնիսկ չի կարող ուղղել իր հոգնած մեջքը. դրա համար նա պետք է պառկի նեղ անցուղու ցեխոտ հատակին: Մի ուրիշը քլունգով փորում է: Նա ծնկաչոք է, բարձրանալ չի կարող: Երկուսն էլ հյուծված են, դուրս ցցված այտոսկրերով:

Դրանք նախառևոլյուցիոն ածխա-



հատներ են, որոնց անտանելի ծանր կյանքն ու աշխատանքը պատկերել է նկարիչ Կասատկինը:

Ծանր էր ածխահատների կյանքը նախկինում, ծանր է նրանց վիճակն այժմ կապիտալիստական երկրներում:

Միայն մեզ մոտ՝ սովետական երկրում է, որ ածխահատների համար ստեղծված են աշխատանքի և կյանքի բոլոր պայմանները: Սովետական ածխահանքերը սարքավորված են նորագույն տեխնիկայով: Ածխահատը հանքախորշի հարմարավետ անցուղիներում այժմ ճանապարհորդում է էլեկտրագնացքներով: Նա աշխատում է նորագույն ածխահատ մեքենաներով: Ածխահանքերում լայնորեն տարածված է ածխահատ կոմբայնը, որը տասնյակ բանվորների աշխատանք է կատարում:

Ածխահատները մեր երկրում մեծ պատիվ ունեն: Ածխահատ բանվորների աշխատավարձը ամենաբարձրն է արդյունաբերության մեջ: Նրանց համար ստեղծված են միջնակարգ և բարձրագույն տեխնիկական դպրոցներ, հիվանդանոցներ ու սանատորիաներ:

Սովետական կառավարության որոշմամբ ամեն տարի օգոստոսին նշվում է ածխահատի օրը:

# ԾԱՂԿԱՁՈՐՈՒՄ



Հանգստի ժամը Գետառի ճամբարում։



Կուլտուրայի աշխատողների պրոֆմիության ճամբարում. թատերական խմբակը նոր պիես է ընթերցում։



Սպառկոոպի պրոֆմիության ճամբարի խմբագրական կոլեգիան պատի թերթ է լույս ընծայում։

Ֆոտոռեպրոդուկցիա՝
Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ